# Առաջին ձյուն

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Ձյո՛ւն, դու եկար անակնկալ,
Եկար ինչպես գարնան երազ,
Մի փաթիլդ կարմիր մի բալ,
Իսկ մյուսդ՝ անուշ կեռաս:
Իջար ինչպես երկնի ոսկի,
Այնպես խաղաղ ու մեղմորեն,
Ձյո՛ւն, դու մայրն ես ամեն հասկի,
Որ դառնում է դեղին ցորեն:
Քո մեջ չկա ոչ մի կորուստ,
Գարնան հմայքն ես դու անմեռ,
Քեզանով ենք շեն ու հարուստ,
Առատ ձյունով մեղմի՛կ ձմեռ:

# ԴԵՂՁԵՆԻՆ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Նա անցել է Ձմռան երկրով,
Հագին շորեր եղյամի,
Ինքը վտիտ, շուրջը՝ կտրող
Սառնամանիք ու քամի:

Նա անցել է Գարնան երկրով,
Հագին կանաչ, խաս շորեր,
Մազերի մեջ ծաղիկ ու շող,
Սրտում՝ գալիք քաղցր օրեր:

Նա անցել է Ամռան երկրով,
Արևին է հյութ եղել,
Իսկ արևը ընծայել է
Նրան փոքրիկ արևներ:

Նա հասել է Աշնան երկիր,
Իր ընծան է տալիս մեզ:
Նա հոգնել է, պիտի քնի,
Աչիկներն են փակվում, տե՛ս:

Նկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ

## ԾԱՂԻԿ

Վաղորդյան հովից
Զարթնող մի ծաղիկ,
Մի բզեզ՝ քնած
Ծաղկի բողբոջում,
Նորածին մրջյուն՝
Ծաղկի առէջքում,
Երկնի մի պատառ՝
Ամեն մի թերթին...
Ամեն մի թերթին
Ցողի մի կաթիլ...

*ԿԱՐԻՆԵ ՔՈՍՈՅԱՆ*
*Երևանի № 118 դպր., 9-րդ դաս.*



*ԱՐՄԻՆԵ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, 8 տ., Լենինական*



*ԱՐԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*8 տ., Երևան*

## ԵՐԱԶԱՆՔ

Ես ուզում եմ երկինք թռչել թռչունի պես,
Տեսնել մոտից լուսնյակն էլի չի՞նչ է այսպես,
Եվ աստղերի ճառագայթներն իմ թևերին՝
Բարձունքների միջից նայել ծերուկ հողին:
Ու կլիներ իմ թռիչքը սքանչելի,
Ծիածանից էլ կանցնեի, թե թռչեի,
Եվ ճամփեքից այդ հեռավոր, անծայրածիր
Մի ափ երկինք կբերեի ինձ հետ երկիր:

*ԱՆՅԱ ՌԱՍԿԻՆԱ*
*14 տ., Բաքու*

*Լուսանկարները՝*
*ԷՄԻՆ ՍԱՖԱՐՅԱՆԻ*

ՀԱՆՐ... Гос. библиотека ... ՀՍՍՀ-Арм.ССР



1/437 -cl

digitised by A.R.A.R.@

# ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## ԽԱՐՈՒՅԿ

Խարու՛յկ, կարծես դու երգում
Ու խոսում ես ինձ նման.
Զոր ճյուղերն են ճարճատում
Կամ էլ վառվում են անձայն:

Գուցե ուզում ես պատմել
Կանաչ երազն անտառի...
Գուցե լռե՞լ ես, տրտմե՞լ
Հուշից գարնան օրերի:

Եվ կամ գուցե ինձ այսօր
Լուսնի մասին ես պատմում՝
Առագաստը քո բոսոր
Տված մթին ու քամուն:

ԻՐԱ ԿՈՒԼԻԿՈՎԱ
14 տ., Բաքու

Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ



ԱՐՇԱԿ ՍԱՐԳՍՅԱՆ, 7 տ., Լենինական

●

ՀՌԻՓՍԻՄԵ ԳԱՍՊԱՐՅԱՆ, 7 տ., Երևան



●

## ԵՐԳԻ՛Ր, ԻՄ ՋՈՒԹԱ՛Կ

Երգի՛ր, իմ ջութա՛կ,
Եվ դողացրո՛ւ անուշ լարերդ.
Թող իմ մատները
Քո հեքիաթաշունչ թելերի վրա
Մոցարտեն անվերջ:
Մրմնջա՛, ջութա՛կ,
Քեզ կմիանա իմ հոգու քնար—
Թագուհու երգը,
Մեզ կձայնակցի վառ այգաբացի
Շողերի երգը.
Կդառնանք եռյակ...
Իմ անո՛ւշ ջութակ,
Այսօր իմ մահճի գլխավերևում
Ժպտա՛ ինձ անվերջ,
Արքայա՛գն եղիր այսօր ինձ համար,
Եվ թող քո անուշ նվագի ներքո
Աշխարհը նիրհի պատուհանիս տակ
Որպես լուռ ջութակ:

ՍՈՒՍԱՆՆԱ ԱՍԱՏՐՅԱՆ
Երևանի № 148 դպր., 10-րդ դաս.



digitised by A.R.A.R.@



ԽԱՉԻԿ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
(Քուչակ)



ՄԽԻԹԱՐ ԳԵՎՈՐԳՅԱՆ
(Լուսագյուղ)



ԷԴՎԱՐԴ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
(Մռավյան)



ԱՐԹՈՒՐ ՍԱՐԳՍՅԱՆ
(Շենավան)

# ԻՄ ԵՎ ՔՈ ՀՈՂԸ

Խաչիկ Աբրահամյանին շատերն են ճանաչում: Նրա մասին գրել են թերթերում, ամսագրերում, հաղորդել են ռադիոյով ու հեռուստատեսությամբ, նույնիսկ կինոժուռնալ են նկարահանել: Խաչիկը իր տարեկիցների նման դպրոց է հաճախում, չարաճճիություններ անում, բայց միևնույն ժամանակ Ապարանի շրջանի Քուչակ գյուղի այս պատանին արդեն լուրջ վաստակի տեր աշխատող է, և տնտեսության մեքենայական հավաքակայանում, մի առանձին տեղ, մշտապես կազմ ու պատրաստ կանգնած է նրա «սեփական» տրակտորը: Նա իրենց տնտեսության դաշտերում խոտ է հավաքում, հացահատիկ կալսում: Իր ազատ ժամանակն անց է կացնում տրակտորի մոտ և նույնիսկ «մասնագիտական» հարցերում վիճում է հոր՝ շրջանի անվանի մեխանիզատոր Հովհաննես Աբրահամյանի հետ:

Ես Ապարան էի գնացել Խաչիկին հանդիպելու: Սակայն կոմերիտմիության շրջանային կոմիտեում ինձ ասացին, որ հիմա շրջանում տասնյակ խաչիկներ կան, նշանակալից վաստակի տեր պատանիներ, որոնք դպրոցական արձակուրդներին դաշտ են գնում վար ու ցանք անելու, բարիք ու առատություն ստեղծելու: Նրանց այդ ինքնաբուխ շարժումը կանոնավոր հունի մեջ դնելու նպատակով կոմերիտմիության շրջանային կոմիտեն և շրջանային ժողովրդական կրթության բաժինը անցյալ ուսումնական տարվա գարնանը, դաշտային աշխատանքներն սկսվելու նախօրյակին, շրջկենտրոնում բացեցին «Պատանի մեխանիզատոր» երկամյա դպրոց, որի առաջին շրջանավարտներն ամռանն արդեն սկսեցին ինքնուրույն աշխատանք կատարել: Այդ 15 պատանիների ուժերով 700 հեկտար արտ ու խոտհարք հնձվեց, 500 հեկտար դաշտ հերկվեց, 950 տոննա խոտ և բազմատեսակ կերեր հավաքվեցին:

Նրանցից ամենակրտսերը 4-րդ դասարանցի Մխիթար Գևորգյանն է՝ Լուսագյուղի դպրոցից: Ամառվա ընթացքում նա ինքնուրույն կերպով 90 հեկտար հունձ է կատարել: Շենավանի դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Արթուր Սարգսյանը 200 տոննա է հնձել, Մռավյանի դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ Էդվարդ Հովհաննիսյանը հակավորել ու խրամատավորել է 300 տոննա խոտ ու սիլոս...

«Պատանի մեխանիզատոր» դպրոցը նորություն է ոչ միայն Ապարանում, այլև մեր հանրապետությունում:

ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# ՀԱՍՄԻԿԸ

ԱՐՏԱՇԵՍ ԱՏՈՄԻ

Մաթեմատիկայից մի քիչ թույլ եմ, դրա համար մաթեմատիկայի ժամերին ուսուցչուհին Մասիսին կողքիցս տանում, Հասմիկին է նստեցնում, որ օգնի ինձ: Օգնելն օգնում է, բայց չգիտեմ ինչու, ինչ ասում եմ՝ ծիծաղում է, ինչ ասում եմ՝ ծիծաղում է: Ծիծաղում է անձայն, այնպես, որ ուսուցչուհին չնկատի: Որ ծիծաղում է՝ շատ է սիրունանում: Դառնում է դասարանի ամենասիրուն աղջիկը:

Մի անգամ գրիչ չուներ, իմը վերցրեց:

— Բա ես ինչո՞վ գրեմ,— ասացի:

— Դու տղամարդ ես, —ասաց,—կճարես:

Ստիպված մատիտով գրեցի: Հետո էլ մատիտը վերցրեց:

— Գոնե մատիտը թող մնա,— ասացի:

— Դու տղամարդ ես,—ասաց,—կճարես:

Որտեղի՞ց պիտի ճարեմ դասի ժամանակ: Ուսուցչուհին տեսավ, որ չեմ գրում, ականջս ոլորեց, իր գրիչը տվեց: Իսկ նա գողունի ծիծաղեց: Հետո գրիչն ու մատիտը չտվեց:

— Կճարես,—ասաց:

Մի անգամ էլ ասաց.

— Արթուր, ես միշտ քո կողքին նստեմ, համաձա՞յն ես:

— Բա Մասի՞սը,—ասացի,—իմ ընկերն է: Մաթեմատիկայի ժամին էլ որ նստում ես, հերիք է:

Խռովեց: Մի քանի օր չխոսեց: Մաթեմատիկայի դասերին էլ չնստեց: Ի՞նչ անեմ խռովեց: Պե՞տքս է: Ուսուցչուհին նկատեց, որ խռովել ենք, ականջս ոլորեց: «Վայրենի» անվանեց, նորից նստեցրեց կողքիս: Հասմիկը նորից խոսեց, ծիծաղեց: Որ ծիծաղում է, շատ է սիրունանում:

— Դու միշտ ծիծաղիր,— ասում եմ:

— Ինչո՞ւ,— ասում է ու ծիծաղում:

— Այդպես ավելի լավ է,—ասում եմ:

Ծիծաղում է:

Մի անգամ էլ դասի ժամին ասաց.

— Արթուր, այսօր կինո գնանք: Մենակ ես ու դու:

— Մասիսն էլ թող գա,—ասացի:

— Չէ՛, ես ու դու,—ասաց:

— Չէ՛, Մասիսի հետ:

Խռովեց, բայց ոչ առաջվա նման, միայն մի քանի րոպե:

Մի անգամ էլ ասաց.

— Մասիսի հետ ընկերություն մի՛ անի, քեզ չի սազում: Ընկերություն արա Աշոտի, Արայի, Արթուր «Դ»-ի, Արթուր



digitised by A.R.A.R.@

«Բ»-ի հետ: Նրանք լավ տղաներ են:

— Քո գործը չէ,—ասացի:

Խռովեց, մի քանի րոպե:

— Մասիսը թույլ է,— ասացի,—նրան շատ են նեղացնում, պաշտպանել է պետք:

Երևի համկացավ, ծիծաղեց, սիրունացավ:

— Թող քո ասածը լինի, — ասաց, — համաձայն եմ:

Ինքն էլ սկսեց Մասիսի հետ ընկերություն անել, օգնել:

Դասամիջոց էր, երկար դասամիջոց: Համիկի հետ վազեցինք բուֆետ, ուզում էի քրոջս համար քաղցրեղեն գնել: Կանգնեցինք հերթի: Քույրս ընկերուհու հետ ինձ էր սպասում: Համիկը մի րոպեով դասարան գնաց. փողն էր մոռացել: Երբ ետ եկավ, հերթն արդեն մեծացել էր: Ինձ տեսավ, ծիծաղեց, մոտեցավ: Ինձնից առաջ տեղ բացեցի:

— Կանգնի՛ր, — ասացի:

Ուզում էր կանգնել, ինձանից հետո կանգնածները չթողեցին:

— Թող հերթի՛ կանգնի,—ասացին:

Բարձր դասարանցիներ էին:

— Իր հերթը այստեղ է,—ասացի:

Չթողեցին:

— Սուտ է,—ասացին:

— Այստեղ է,—ասացի:

Իրենք չէ, ես՝ հա: Իրենք չէ, ես՝ հա: Թնիցըս բռնեցին ու դուրս հանեցին հերթից, իրենք էլ դուրս եկան: Թնիցս բռնեցին, քաշեցին մի կողմ: Խմբով էին: Օղակեցին:

— Մեկ-մեկ խոսեք,— ասացի: Քույրս վիզը ծուռ ինձ էր նայում: Համիկն արդեն կարկանդակն առել ու ինձ էր նայում:

— Մեկ-մեկ խոսեք,— ասացի տղաներին:

Խփեցին, աջից-ձախից, ետևից: Ստիպված գլուխըս առա ձեռքերիս մեջ, գոնե գլուխս պաշտպանեմ: Խփում էին որտեղ պատահեր: Մտածեցի. «մեկին էլ գոնե ես խըփեմ»: Աչքերս բռունցք արեցի ու խփեցի մեկին, մյուսին, երրորդին և մեկ էլ աչքերս մթնեց, ընկա ցած: Հենց ընկա, տղաները փախան: Վեր կացա, բուֆետում միայն աղջիկներ էին մնացել: Քույրս խեղճ-խեղճ ինձ էր նայում: Համիկը՝ նույնպես, գույնը գցել էր: Մոտեցավ կանգնեց կողքիս: Քթիցս արյուն էր գալիս: Վերնաշապիկս արյունոտվել էր: Բուֆետապանը ճակատիս սառը թրջոց դրեց, նստեցրեց: Քույրս ինձ տվեց թաշկինակն ու ընկերուհու հետ վազեց դասարան: Զանգը հնչեց: Երեվաց ուսմասվարը: Բուֆետում մնացել էինք մենակ ես ու Համիկը:

— Զանգը եղել է,— ասացի Համիկին, — գնա՛:

— Չէ՛,— ասաց, — իրար հետ կգնանք:

— Ես հետո կգամ, կուշանաս:

— Չէ՛, իրար հետ կըգնանք:

Ուսմասվարը մոտեցավ.— Ի՞նչ է պատահել,—հարցրեց: Չէի ուզում ասել: Համիկը պատմեց: Անունները էլ տվեց:

— Գնա՛ բժշկուհու մոտ,—ասաց ուսմասվարն ու գնաց:

Լվացվեցի և Համիկի հետ քայլեցինք դեպի բժշկուհու կաբինետը: Նա բռնել էր մեջքիցս, այնքան հարազատ էր, այնքան ջերմ, ուզում էի բժշկուհու կաբինետը հեռու, շատ հեռու, աշխարհի ծայրին լիներ:



digitised by A.R.A.R.@



*Լուսանկարները՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*

# ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆԻ «ԿԱՅԱՐԱՆԱՅԻՆ»-Ը

Ճարտարապետ Տիգրանյանը տարիներ առաջ երբ նախագծում էր Երևանի երկաթուղային կայարանի շենքը, արդյոք գիտե՞ր, որ այդտեղ լինելու է նաև ստորգետնյա ուղու՝ Երևանյան մետրոպոլիտենի կայարան։ Այժմ կայարանի շենքի տակ գտնվում է մի լայն անցում, որը տանում է մետրոպոլիտենի «Կայարանային» կայարանը։ Ովքեր արդեն օգտվել են այդ անցումից և հասել մետրոպոլիտենի հիշյալ կայարանը, գիտեն, որ այն ձևավորված է «Սասունցի Դավիթ» էպոսի սյուժեներով։ Սրահները ներկայացնում են էպոսի տարբեր ճյուղերը։ Հարթաքանդակներն ու խորաքանդակները, սիմվոլիկ պատկերների միջոցով կարմիր տուֆի վրա ներկայացնում են Ծովինարի կերպարը, Սանասարի ու Բաղդասարի ջրային ծնունդը, Առյուծ Մհերի տպավորիչ քանդակը, Դավթի կյանքի տարբեր շըր-



digitised by A.R.A.R.@

ջանները և Փոքր Մհերի ու Քուռկիկ Ջալալիի փակվելը Ագռավաքարի մեջ (քանդակագործ՝ Արտաշես Հովսեփյան):

Ժողովուրդը Մհերի կերպարի մեջ մարմնավորել է գալիքի նկատմամբ ունեցած իր լավագույն հույսերը: Էպոսում Մհերը չի մահանում, այլ փակվում է ժայռի մեջ և սպասում, որպեսզի երբ երկիրը մի անգամ ավերվի, շինվի և գարին դառնա «քանց ընկույզ մի», իսկ ցորենը՝ «քանց մասուր մի», այն ժամանակ միայն դուրս գա:

Այս գաղափարը հրաշալի է արտահայտված վերջին սրահի ճակատային պատին: Երկնակամարում մայր մտնող արևն է, ցածում պառկած է Մհերը, կողքին՝ Քուռկիկ Ջալալին: Երկնակամարից նրանց վրա է թափվում երկնային մանանա, որով տարին մեկ անգամ սնվում են նրանք և սպասում իրենց դուրս գալու ժամին:

Երբ դու առիթ ունենաս լինելու այս կայարանում, ուշադիր դիտիր և աշխատիր հասկանալ, թե ինչո՞ւ Դավթի և Մսրա Մելիքի մենամարտը գլուխ գլխի տված երկու խոյերի կռվով է պատկերված, Ձենով Օհանը, Թևաթոռոսը, Վախկոտ Վերգոն պատկերված են արծիվների տեսքով, կամ մոր գաղափարը արտահայտված է սկավառակաձև քանդակով:

Վիթխարի միջոցներ ու մարդկային վիթխարի աշխատանք է ներդրվել այս հսկայական կառույցի վրա, որ իրականացել է մեր երկրի X հնգամյա պլանի համաձայն, կուսակցության երկու համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում: Աչքի լույսի նըման խնամքո՛վ վերաբերվիր դրանց, բարեկա՛մ: Դպրոցն ավարտելուց հետո դու էլ քո ներդրումն ես ունենալու համաժողովրդական նման կառույցներում, ինչպես և այս կառույցում, որը շարունակվելու է, քանի դեռ մեծանում է Երևանը:

*ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆ*





digitised by A.R.A.R.@

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
բանասիրության դոկտոր

## 32. ԿԱՐԵԼԻ՞ Է ԱՍԵԼ՝ «ԱՄԵՆԻՑ ԴԺՎԱՐ ՀԱՋՈՂՎՈՒՄ ԵՆ ՀԵՇՏ ԲԱՆԵՐԸ», ԿԱՄ՝ ՊԱՐԱԴՈՔՍԻ ՄԱՍԻՆ

Առաջին հայացքից, պարզ, ուղղակի տրամաբանությամբ՝ իհարկե, չի կարելի. ինչպե՞ս կարող են հեշտ բաները դժվար հաջողվել. հեշտը հեշտությամբ է գլուխ գալիս, դժվարը՝ դժվարությամբ:

Եվ իրոք այդպես է:

Բայց եկեք խորանանք այս ասույթի մեջ, փորձենք գտնել այս «անտրամաբան» մտքի տրամաբանությունը: Հենց մեր առօրյա կյանքում քի՞չ է պատահում՝ կարևոր ու դժվար բաներն անում ենք, քանի որ դրանց մեծ ուշադրություն ենք դարձնում, իսկ այն, ինչ հեշտ է՝ հետաձգում ենք շարունակ, մտածելով, թե դա միշտ էլ կանենք: Եվ հետաձգելով, հետաձգելով տեսնում ենք, որ հեշտ բաներն այդպես էլ մնացին անկատար:

Երևի նույնն է պատահել Նապոլեոնի հետ և դրդել նրան ասելու «ամենից դժվար հաջողվում են հեշտ բաները», որ դարձել է թևավոր խոսք:

Հենց սա էլ՝ ավանդաբար ընդունված, հանրահայտ մտքից խստորեն տարբերվող խոսքն է, որ կոչվում է պարադոքս: Այս բառը ևս հունարեն է և նշանակում է ոչ այլ ինչ, քան «անսովոր», «տարօրինակ», բայց հայերեն չի թարգմանվում, և պետք էլ չէ թարգմանել:

Բերենք մի ուրիշ օրինակ. «Ոչինչ չանելը շատ ծանր աշխատանք է»: Այս պարադոքսը պատկանում է իր պարադոքսալ դատողություններով հռչակված անգլիական գրող Օսկար Ուայլդին: Ավանդաբար ընդունված է միանգամայն ճիշտ այն կարծիքը, որ ծանր աշխատանքը կապված է դժվարին գործի հետ և ոչ թե պարապ-սարապ լինելու: Բայց Ուայլդն ասում է ճիշտ հակառակը՝ իր անսովոր, տարօրինակ դատողությամբ հակադրվելով ավանդականին և ի հայտ բերելով մի կարծիք, որ ճշմարիտ է յուրովի՝ իրո՛ք որ պարապ մնալը շատ դժվար գործ է: Չե՞ք նկատել արդյոք:

Չկարծեք, թե պարադոքսները հենց միայն մեծ ու նշանավոր մարդիկ են հորինում: Բնա՛վ: Ոչինչ այնքան հարուստ չէ պարադոքսներով, որքան ժողովրդական բառ ու բանը: Ժողովուրդը դարեր ի վեր ասել, բյուրեղացրել է փայլուն պարադոքսներ, առանց մտածելու, թե լեզվի մասնագետները դրանք ինչպես կկոչեն:

«Թանկից էժանը չկա»,— ասում է մեր ժողովուրդը: Դա նույնն է, ինչ անգլիացիները ձևակերպել են այսպես. «Ես այնքան հարուստ չեմ, որ էժան բան առնեմ»:

Վերստին անսովոր, անսպասելի, տարօրինակ դատողություն, որ առաջին հայացքից հակառակ է առողջ բա-



digitised by A.R.A.R.@

նակաճության։ Թանկը թանկն է, էժանը՝ էժանը, ինչպե՞ս թե «թանկից էժանը չկա»։ Շատ պարզ. լավ ապրանքը թանկ է լինում, լավ ապրանքը որակյալ է ու դիմացկուն, ուրեմն և՝ ավելի լավ է թանկն առնել, քան էժանը, որ շուտ է ձեռից գնում։ Այս տրամաբանությամբ էլ միանգամայն տարբեր ժողովուրդներ իրենց կենսափորձը խտացրել են նույն իմաստն ունեցող ասացվածք-պարադոքսների մեջ։

Մեր նախորդ զրույցում խոստացել էինք ցույց տալ, թե ինչպես միտքը կարող է լինել սրամիտ, չափազանց սրամիտ, բայց ոչ ծիծաղելի։ «Թանկից էժանը չկա» արտահայտությունը դրա մեծարժիվ օրինակներից է։

Նույնը չէ՞ արդյոք. «Դանդաղ գնաս, շատ կգնաս»։ Սա էլ կարծես թե հակառակ է առողջ տրամաբանությանը. պետք է արա՛գ գնաս, պետք է շտապե՛ս շատ գնալու համար, դրանից էլ պարզ բա՞ն։ Բայց արի ու տես, որ շտապելիս մի բան մոռանում ես, շփոթվում՝ չանելով այն, ինչ հարկավոր է, և ստիպված ես լինում ետ դառնալ, նորից նոր սկսել նույն գործը։ Մինչդեռ հանգիստ, մտածված, թեկուզև դանդաղ գործելու դեպքում ավելի շուտ ես հասնում նպատակիդ։ Դուրս է գալիս, որ շատ պարզ ճշմարտություն է թաքցնում ժողովրդական իմաստուն պարադոքսը։

Բառարանները «պարադոքս» բառը բացատրում են այսպես. «Սովորական, ընդունված, հանրահայտ կարծիքից կտրուկ կերպով տարբերվող կարծիք կամ դատողություն, որ առաջին հայացքից հակասում է առողջ դատողությանը»։

Այդպես է որ կա։

Բայց ինչո՞ւ ենք մի ամբողջ զրույց հատկացնում դրան։ Մի՞թե դա այդքան կարևոր է կարգին խոսելու և գրելու համար։

Այո՛, չափազա՛նց կարևոր է, եթե կարգինը համարենք այն խոսքը, որ տպավորվում է, մեխվում հիշողության մեջ։

Պարադոքսը, պարադոքսալ մտածողությունը առհասարակ, տափակության թշնամին է և ինքնատիպ մտածողության ստույգ նշանը։ Պարադոքսը փայլ է տալիս մտքին, ուրեմն և լեզվին, ի հայտ է բերում խոսողի կամ գրողի մտքի անկախությունը, մտածողության ինքնատիպությունը։ Թե չէ՝ ինչի՞ նման է, երբ մարդ ասում է ու գրում թեկուզև ճշմարիտ, բայց հազար անգամ ասված, ծեծված ու ծամծմված, մաշված, հղկված ընկած խոսքեր ու մտքեր։

Ինչի՞ նման է։ Անտոն Չեխովի այն հայտնի հերոսին, որ դարձել է մարդկային տափակության խորհրդանիշ։ Եվ ինչպե՞ս է մեծ գրողը ներկայացրել իր հերոսին՝ նրա խոսքի ու մտքի տափակությունը ցույց տալով։ Նա՝ այդ հերոսը, որի անունը Նիկիտին է, «կամ լռում է, կամ էլ ասում է լոկ այն, ինչ ամենքին վաղուց ի վեր հայտնի է»։ Ահա նրա մտքերի շարքը. «Հիմա մայիսն է, շուտով կլինի իսկական ամառ։ Իսկ ամառն այն չէ, ինչ ձմեռը։ Ձմեռը պետք է վառարանները վառել, մինչդեռ ամառն առանց վառարանի էլ տաք է», «Առանց սնունդի մարդը չի կարող գոյություն ունենալ», «Վոլգան թափվում է Կասպից ծովը»... «Ձիերն ուտում են վարսակ և ծղոտ...»

Ծիծաղելի է, չէ՞։ Բայց չկարծեք, թե մեր շրջապատում քիչ են այդպիսի տափակ մարդիկ կամ մենք ինքներս շատ հեռու ենք այդ տխուր օրինակից։ Համոզվելու համար փորձեցեք այս տեսանկյունից զննել ձեր և ձեր ըն-



digitised by A.R.A.R.@

կերների խոսքերը, գրած շարադրությունները: Կարծում եմ, հեշտությամբ կհամոզվեք, որ դրանց մեջ տափակ ու անհամ շատ բան կա: Դրա վկայություններն ինձ ցույց են տվել իմ այն ընկերները, որոնց վիճակվել է լեզվի քննություն ընդունել բարձրագույն դպրոց դիմողներից: Մարդիկ գրում են շարադրություններ, որոնց մեջ չկա և ոչ մի թարմ, ինքնատիպ դատողություն, պարադոքսալ մտածողության ոչ մի հետք: Ի՞նչ են դրանք՝ դասագրքերից քաղած հայտնի ճշմարտությունների, ոչինչ չասող արտահայտությունների, տափակ դատողությունների շարաններ: Գրում են այսպես և զարմանում ու բողոքում՝ ինչո՞ւ իրենց բարձր չեն գնահատում, չէ՞ որ իրենք քերականական ոչ մի սխալ չեն արել: Ճիշտ է, քերականական սխալ չեն արել, բայց ինքնուրույն մտքի հեռավոր ապացույց էլ չեն տվել: Իսկ դա ավելի վատ է, քան քերականական սխալը, քանի որ դա մասնավոր, գուցե և պատահական երևույթ է, իսկ մտքի տափակությունը՝ համատարած, և ավելի, շա՜տ ավելի դժվարությամբ ուղղելի, քան քերականական սխալը:

Մեր այս գրույցի խորհուրդն ու նպատակն էլ հենց այն է, որ դուք խուսափեք նման շարադրությունների հեղինակը լինելու աննախանձելի հեռանկարից: Ի՞նչ է հարկավոր դրա համար: Հարկավոր է վարժվել պարադոքսալ մտածողությանը: Ինչպե՞ս: Ե՛վ կարդալու, այդ մտածողությամբ աչքի ընկնող գրողներին կարդալու, ժողովրդական ասացվածքների, պարադոքսալ դարձվածքների տրամաբանության մեջ թափանցելու, և՛ գրելու, խոսելու ընթացքում: Իհարկե, հավանական չէ, որ դուք մտքի ինքնատիպության փայլուն օրինակներ տաք, բայց հավանական և միանգամայն հնարավոր է, որ կարողանաք կյանքի որևէ երևույթ, գրական որևէ երկ բնութագրել ձեր սեփական մոտեցմամբ, ընդունված, ստանդարտի ենթարկված դատողություններից տարբեր վերաբերմունքով:

Եթե մեր խոսքը տպավորիչ դարձնելը մեր գլխավոր նպատակն է, ապա այդ նպատակին հասնելու, գեթ մոտենալու համար մեզ ոչ պակաս հիանալի ծառայություն կարող են մատուցել դարձվածքների մյուս տեսակները ևս, միայն թե պետք է խելք բանեցնել այդ շռայլ ծառայությունից օգուտ քաղելու համար:

Դրանցից են, այսպես կոչված, թևավոր խոսքերը, որոնց և կնվիրենք մեր հաջորդ զրույցը:





digitised by A.R.A.R.@



# ԼՈՒՇԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

ՆԱՏԱԼՅԱ ԲԱՐԱՆՍԿԱՅԱ

ՆԿ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Լուշկան դասարանում ամենափոքրն էր։ Տարիքով չէ, բոյով։ Փոքր, նիհար, կարծես ոչ թե ութերորդ, այլ հինգերորդ դասարանի աշակերտուհի լիներ։

Սովորում էր միջակ՝ «երեքներ», «չորսեր»։ Պատահում էր և «հինգ», բայց հազվադեպ։ Այս բոլորը՝ բոյը, նիհարությունը, թվանշանները, Լուշկայի մայրը բացատրում էր սնունդով։

— Մեր սնունդը մի բան չէ,— ասում էր նա,— դու էլ մինչև գդալը վերցնում ես, Յուրկան արդեն կաթսայի տակն է քերում։

Լուշկայի եղբայրը՝ Յուրկան երեք տարով փոքր էր քրոջից և գտնվում էր շատ խժռելու հասակում։ Տասներկու տարեկան ինքնուրույն տղաները, որոնք բոլոր ազատ ժամերին գնդակ են խաղում բակում, միշտ հավելյալ ուտելիք են խնդրում։

Լուշկան լավ ընկեր էր, հազվադեպ էր մերժում ընկերների խնդիրը, որի պատճառով էլ ստիպված էր լինում թե՛ ուրիշի տեղն հերթապահել, թե՛ անրոշ ժամանակով պարտք տալ նախաճաշի համար մոր տված քսան կոպեկը։

Գարուն էր, ուսումնական տարին ավարտվում էր։ Բոլորը քննարկում էին ամառային ծրագրերը, դասարանի նորաձևության սիրահարներն էլ՝ ամառային զգեստները։ Մի քանիսը հրաժեշտ էին տալիս դպրոցին՝ գնում էին ՊՏՈՒ՝ տեխնիկական կրթություն ստանալու։ Լուշկան էլ պետք է գնար աշխատելու։ Նա ինքն էր ընտրել իր գործը՝ էլեկտրապարագների «Լույս» խանութում վաճառող։ Կես տարի պետք է աշակերտուհի լիներ, փոքրիկ թոշակ ստանար։

Դեռ ձմռանը, անցնելով խանութի ցուցափեղկերի կողքով, հայացքն ուղղելով նրա փայլուն, փողփողող խորքը, հիանալով շքեղ ջահերով, շողարձակ լուսամփոփներով, նիկելապատ սարքավորումներով, սառնարանների սպիտակ խորանարդիկներով, հասկացավ, որ ուզում է շարժվել այս իրերի մեջ, և ոչ միայն շարժվել, այլ շոշափել, տիրել նրանց։ Իսկ ցուցափեղկում դրված էր մի տախտակ, որի վրա գրված էր, թե աշխատանքի են ընդունվում աշակերտ-վաճառողներ



digitised by A.R.A.R.@

ութնամյայից ոչ պակաս կրթությամբ և տարիքը տասնհինգից ոչ պակաս։

Այդ ձմեռային օրերից սկսած, երբ Լուշկան ինչպես հարկն է տեսավ խանութը, սովորություն դարձրեց մտածել նրա մասին։ Սկզբում որպես հնարավոր աշխատանքի, իսկ հետո որպես ցանկալի աշխատանքի։

Մայրը երկար տարիներ աշխատել էր քիմմաքրման ցեխում, մի երեք տարի առաջ բժիշկները խրոնիկական բրոնխիտ էին հայտնաբերել և արգելել քիմիական նյութերով աշխատել։ Նա փոխադրվել էր ընդունման կետ, աշխատավարձը պակասել էր, իսկ առողջությունը չէր վերականգնվում։ Հայրը մի քանի տարի առաջ հեռացել էր նրանցից, նոր ընտանիք կազմել, նա օգնում էր, բայց գումարը մեծ չէր, նա արդեն ուրիշ երեխաներ էր մեծացնում, նրանք էլ կարիք ունեին։

Երբ Լուշկան մորն ասաց, որ այլևս չի ուզում սովորել և գնալու է աշխատանքի, մայրը հուզվեց։ Նա ուզում էր, որ աղջիկը ճարտարագետ դառնա, ուսուցչուհի, բժիշկ։

— Մա՛մ, մի՞թե բոլորն աշխարհում պետք է ինստիտուտներ ավարտեն։ Չէ՞ որ կան մարդիկ, որոնք աներդունակ են բարձրագույն կրթության։ Ես հենց դրանցից մեկն եմ։

Մայրը մոլորված լռեց։

Երբ եկավ դիմում տալու և ձևակերպվելու ժամանակը, Լուշկան լավ միտք արավ, թե ինչպիսին պետք է լինի աշակերտի թեկնածուի, էլեկտրապրանքների ապագա վաճառողի արտաքինը։ Եվ ահա թե ինչ արեց։ Հագավ երկու զույգ գուլպավարտիք, Յուրկայի բումազեի բլուզը, վրան քաշեց յուբկան ու բրդյա ժակետը։ Յուրկայի բլուզի թևքերը ցանկալի լայնություն տալով հավաքվեցին ուսերին, իսկ յուբկան կիպ ձգվեց կոնքերին։ Լուշկան դիտեց իրեն հայելում և ասաց հառաչելով.

— Ինչպե՜ս է, քառասուննութ չափսի երևի կա...

Մազերը գզեց և ոչ այնքան բարձր, բայց փարթամ սանրվածք ստացավ, որը նրա բոյը մի երկու սանտիմետրով բարձրացրեց։ Հագավ նաև մայրիկի կրնկավոր կոշիկները, նախապես քթերի մեջ բամբակ խոթելով, շահեց ևս երկու սանտիմետր։ Հետո անշտապ, մանրազնին նայեց իրեն հայելում։ Ուզում էր ավելի տպավորիչ երևալ, բայց մարդկանց վախեցնելու հարկ չկար։

Զգեստավորումն իր դերը խաղաց, խանութում վաճառողների, նաև աշակերտների խիստ պակաս էր զգացվում, բայց Լուշկային ընդունեցին առանց բծախնդիր զննման ենթարկելու։

Ութերորդ «բ»-ն ճանապարհում էր ՊՏՈՒ գնացող ընկերներին։ Լուշկան էլ էր ճանապարհում նրանց։ Իսկ նրան չէին ճանապարհում՝ պաշտոնապես։ Դպրոցի դիրեկտորը՝ տիրական, փարթամ ու գեղեցիկ մի կին, հրաժեշտի ու բարի երթի մաղթանքի իր ճառում դիմում էր միայն ապագա տեխնիկներին։ Վերա Լուկյանովնայի մասին կոմսոմոլի կազմակերպության քարտուղարը նույնպես չհիշեց։

Իր ելույթում նա խոսում էր տաղանդների մասին, ասում, որ լինում են տաղանդներ նման հրավառության, շողշողուն, անակնկալ, լինում են և ուրիշները՝ աչքի չընկնող, համեստ, բայց հասարակության համար ոչ պակաս կարևոր, դրանց թվին են պատկանում նրանք, ովքեր կարողանում են ստեղծագործաբար տիրապետել տեխնիկային, քանի որ տեխնիկան աճում է, բարդանում և արտադրության մեջ նոր ուժեր պահանջում։

Լուշկան լսում էր ու ափսոսում, որ ինքը ոչ մի տաղանդ չունի։

«Տաղանդ ունենալով ապրելն, իհարկե, շատ ավելի հետաքրքիր է,—



digitised by A.R.A.R.@

մտածում էր Լուշկան,—բայց, ավելի հեշտ է... գուցե հակառա՞կը»:

Եվ հանկարծ Լուշկան լսեց իր անունը: Նրան հիշեց դասարանի ղեկավարը: Նա ասաց, որ ինքը, և բոլոր մյուսները, ողջ դասարանը, շարունակ պետք է զգան Լուշկայի՝ Վերա Լուկյանովայի բարի, ջերմ մարդու, լավ ընկերոջ բացակայությունը: Այստեղ բոլորը դեպի Լուշկան դարձան, ծափ զարկեցին ու տարբեր բաներ բղավեցին. «Լո՛ւշկա, մեզ չմոռանա՞ս», «Բարի ճանապա՞րհ քեզ, Լո՛ւշկա», «Մենք սիրո՞ւմ ենք քեզ»:

Լուշկայի կոկորդը նույնիսկ սեղմվեց, այնպես էր հուզվել:

Մեկ օրից նոր կյանք սկսվեց. Լուշկան աշխատանքի գնաց: Եվ իսկույն սկսվեցին հիասթափությունները: Նոր ընկերուհիները նրան վատ չընդունեցին, բայց որոշակի զգացնել էին տալիս՝ իրենք վաճառողներ են, Լուշկան ընդամենը աշակերտ: Իրենք մեծ են, Լուշկան՝ դեռ աղջնակ: Իսկ այն ամենը, ինչով Լուշկան մի ժամանակ հիանում էր ցուցափեղկերի ապակիների ետևից, այդ ողջ շողշողացող ու փայլփլող աշխարհը, ամենևին էլ իրեն չէր պատկանում:

Օրվա հիմնական մասը նա անց էր կացնում օժանդակ զետեղարաններում. արկղեր էր բացում, ջոկում ամեն տեսակ էլեկտրամանրուք, որը պետք է հատ-հատ հաշվեր, բաժաներ ու դասավորեր ինքնասպասարկման բաժնի դարակների վրա: Եվ հաշիվը չխառներ, չշփոթեր «խրոցի մեկակի ժանիները» «խրոցի եռակի ժանիների» հետ:

Նաև պետք է շաղ տար, խառներ պլաստմասսայե ու մետաղական մասնիկները, թույլ չտար, որ խճճվեն երկարացուցիչի հաղորդալարերը, չկծկեր իրար հետ, տարբեր կտրվածքի լարերը չկպչեին մեկուսիչ ժապավենից: Շատ բանից պետք է խուսափեր և շատ բան թույլ չտար:

Լուշկան ուզում էր հասկանալ գործի էությունը, իմանալ ինչը ինչի համար է, բայց ոչ ոք չէր շտապում բացատրել: Վաճառողուհիները կանչում էին. «Լուկյա՛նովա, բե՞ր», «Լուկյա՛նովա, հանի՞ր», «Ջնջոցը վերցրո՛ւ, մաքրի՛ր»: Եվ թեև գործը շատ էր, նրա քունը գալիս էր: Լուշկան նկատում էր, որ իրենք՝ վաճառողուհիները այնքան էլ չէին հասկանում մասնիկների դերն ու նրանց կապն իրար հետ: Կարծես նրանց այդ չէր էլ հետաքրքրում:

Լուշկան տեսնում էր, թե ինչպես է տարեց գնորդուհին տանջվում, որ բացատրի, նույնիսկ ձեռքերով ցույց է տալիս, որ իրեն պետք է «այնպիսի մի օղակ, որ պտուտակվում է լուսամփոփի տակ», իսկ վաճառողուհի Ռիտա Կովրովան, կկոցելով աչքերը, թոթվում է ուսերը: «Դուք մի՛ պտտեցրեք ձեր ձեռքերն, այլ ասե՛ք, ինչպես է դա կոչվում»:

Այդ նույնպես խոցում էր Լուշկայի սիրտը. ինչպես են խոսում նրանք գնորդների հետ, ինչպես են պահում իրենց նրանց նկատմամբ: Ա՜խ, եթե Լուշկային թողնեին վաճառասեղանի մոտ կանգնել, մի՞թե նա այդքան օտար ու սառը կլիներ, ինչպես ավագ վաճառողուհի Քսենյա Իվանովնան, կամ այդքան չմահավան ու գոռոզ, որքան գեղեցիկ Լարիսան: Ո՛չ: Նա անպայման մասնակից կդառնար գնվելիքի ընտրելուն: Այս բառերով Լուշկան սահմանեց իր համար վաճառողի ամենագլխավոր խնդիրը:

Լուշկային քիչ էր վիճակվել բան գնել: Բայց նա գիտեր, ինչ հաճույք է նոր իր ձեռք բերելը: Դիտել, ընտրել, գնածը տուն տանել: Նա շատ պարզ պատկերացնում էր, թե ինչպես է գնորդը տանը զննում նոր լամպը կամ էլեկտրական թեյամանը, տեղ փընտրում նոր իրի համար, իսկ տեղը ընելուց հետո ետ-ետ գնում հեռվից մի անգամ էլ հիանալու համար: Լուշկան

ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ Гос. Библиотека ՀՍՍՀ-Арм.ССР



digitised by A.R.A.R.@



ուրախանում էր, որ մարդկանց հաճույք է պատճառելու, և ուզում էր, շատ էր ուզում շուտ սկսել վաճառել:

Բայց, ավա՜ղ, վաճառել նրան չէին թողնում: Նույնիսկ էլեկտրամանրուք: Երբեմն թաքուն, երբ տեսնում էր գընորդը շփոթվել է ու չի գտնում պետքականը, ցույց էր տալիս, թե որտեղ է այդ ապրանքը դրված: Ռիտա Կովրովան և բաժնի մյուս վաճառողուհին՝ Ալլա Սոտինան, սիրում էին զրուցել և չէին նկատում Լուշկայի «ինքնագործունեությունը», գուցե և ձևանում էին, թե չեն նկատում:

Եվ այնուամենայնիվ, չնայած հիասթափություններին, Լուշկան «Լույս»-ին հարմար եկավ: Նրան լավ էին վերաբերվում, գնահատում էին նրա քմահաճ չլինելն ու մերժել չիմանալը: Նրան միշտ կարելի էր հացի ու կաթի խանութ ուղարկել, ուտելիք բերելու, անձրևից ու շոգից փողոցում կանգնեցնել բեռնաթափմանը հետևելու և ուղղակի հեռու քշել սիրային գործերի մասին աշխույժ զրուցելու պահին:

Ժամանակն անցնում էր, արդեն քիչ էր մնում աշակերտության ժամկետի ավարտին, և Լուշկային տվին կարդալու գործի մասին բրոշյուրներ սարքավորումների և նրանց օգտագործումը նկարագրող հրահանգների մի կապոց:

Հատկապես դժվար էր հրահանգներն ուսումնասիրելը. չգիտես, օտարազգինե՞ր էին գրել դրանք, թե՞ նախանցյալ դարի գրագիրներ:

Հենց այն օրը, երբ Լուշկան բոլորովին ուժասպառ էր եղել «գրականության ընթերցումից», Լուշկային կանգնեցրին սեղանի լամպերի, տորշերների ու լուսամփոփների բաժնի վաճառասեղանի մոտ: Աշխատանքի չէր եկել Լարիսան. գիշերը նրան հիվանդանոց



digitised by A.R.A.R.@

էին տարել կույր աղիքի սուր բորբոքումով։

Լուշկան կարծում էր, որ երբ առաջին անգամ հանդիպի գնորդին, իր համար տոն կլինի։ Եվ այդ օրվան, ինչպես տոնի, կպատրաստվի, լավ կհագնվի, հատուկ կսանրվի։ Բայց ստացվեց այնպես, որ վաճառասեղանի մոտ կանգնեց մուգ մոխրագույն, չափազանց երկար, չափազանց լայն խալաթով։

Բաժնում հայտնվեց առաջին գնորդուհին ոսկեթել ժապավենակը երեք հարկ վրան փաթաթված ֆետրե գլխարկով մի գեր կին էր։ Նա Լուշկային թույլ չտվեց ոչ մի բառ արտասանել, մեկը մյուսի ետևից նայեց բոլոր լամպերը, ամեն մեկի մասին մի վատ բան ասաց, հետո շուռումուռ տվեց տորշերի նարնջագույն լուսամփոփը, որ ձևով նման էր իր գլխարկին, գտավ, որ այն «սոսկալի այլանդակ» է, ու ոչինչ չգնեց։

Հետևյալը՝ թևի տակ հաստ թղթապանակ, մորթե հովարավոր գլխարկով մի երիտասարդ էր։

Նա երկար ու սևեռուն մտորում էր շարժական լուսամփոփով հունգարական լամպին նայելով, որ Լուշկան այս ու այն կողմ էր շրջում նրա առաջ, և երբ Լուշկան լիովին համոզվեց, որ նա վերցնում է այն, հանկարծ միտքը փոխեց ու արագ հեռացավ։

Միայն երրորդ գնորդի հետ Լուշկան կարողացավ զբաղվել այնպես, ինչպես պատկերացնում էր իր ասած «ընտրելուն մասնակից դառնալը»։

Այդ գնորդը՝ ականջավոր մորթե գդակով տարեց մարդ, սկզբում մի քիչ ետ ու առաջ արեց վաճառասեղանի մոտ, աչքի տակով նայեց լամպերին, Լուշկային, հետո ասաց.

— Աղջի՛կս, գուցե դու ինձ լա՞մպ ցույց տայիր։

Նա Լուշկային վաճառողի տեղ չդրեց։

Լուշկան հարցրեց, թե ի՞նչ լամպ է նրան պետք, հյուրասենյակի՞, թե՞ աշխատասենյակի համար։

— Աշխատասենյակի՞, — հարցրեց մարդն ու ծիծաղեց։

— Այո՛, իհարկե, ես ուզում էի ասել գրասեղանի, աշխատելու համար։

— Մի՞թե միևնույն չէ, հյուրասենյակի թե աշխատասենյակի համար։

— Ո՛չ, միևնույն չէ,— և Լուշկան ուրախացավ, որ իրեն լսում են, ու ընկրսեց բացատրել,— հյուրասենյակի համար պետք է բարձր ոտքով շքեղ լամպ, սովորաբար այն դնում են սեղանի մեջտեղը։ Աշխատելու համար լամպը պետք է որոշակի ուղղության լույս տա, իսկ շարժական լուսամփոփը...

— Այո, այո, ինձ այդպիսին է պետք, աշխատանքի համար։

Գնորդը վաճառասեղանի վրա դեսուդեն տարավ հունգարական լամպը։

— Միայն թե գույնը... մռայլ է։

— Ձեզ դուր չի՞ գալիս մոխրագույնը։ Ունենք նաև եփած կաթի գույնի։ Իսկ ի՞նչ գույնի են ձեր սենյակի պաստառները։

— Պաստառնե՞րը,—քեռին հետաքրքրությամբ նայեց Լուշկային։— Ահա թե ի՞նչ, ուրեմն, պաստառներն էլ նշանակություն ունեն։

— Հապա ինչպե՞ս՝ պաստառների գույնը, կահույքի երեսպատումը պետք է ներդաշնակեն լուսամփոփների գույնին...

Լուշկան շտապում էր երկան հանել իր «Ինտերյեր-գույն և ձև» գրքից քաղած գիտելիքները։

— Պաստառները... պաստառները,—գնորդը աշխատում էր հիշել իր պաստառները։— Ինչ որ կանաչավուն են։ Վրան էլ ինչ-որ ծաղիկներ՝ կարծես թե դարչնագույն... Ավելի ճիշտ՝ կոնիկներ...

— Ուրեմն ձեզ ավելի հարմար կգա



digitised by A.R.A.R.@

եփած կաթի գույնի լամպը: Մի րոպե սպասեք, հիմա կբերեմ:

Եվ Լուշկան վազեց լամպը բերելու: Գնորդը նրա ետևից նայելով, ժպտաց:

Լուշկան բերեց արկղիկը, արագ բացեց ու հանեց բաց գույնի, տաք, մի փոքր վարդագույն երանգի լամպը: Նա նույն ձևի էր, ինչ որ մոխրագույնը, բայց շատ ավելի շքեղ էր երևում: Լամպը քեռուն այնպես դուր եկավ, որ նա նույնիսկ լեզուն ծլպլպացրեց:

— Շատ շնորհակալ եմ ձեզանից,—դարձավ նա Լուշկային արդեն հարգանքով:—Գիտեք, աղջի՛կս, այս օրը ես օրացույցի վրա եմ նշելու, առաջին անգամ եմ ձեզ նման վաճառողուհու հանդիպում:

Մեկ շաբաթից նա արդեն պաշտոնապես վաճառողուհի դարձավ:

Նոր տարի էր մոտենում, գնորդները ավելանում էին, գործը շատ էր: Լուշկան ստիպված էր փոխնիփոխն աշխատել՝ մեկ ինքնասպասարկման, մեկ՝ լամպերի բաժնում:

Մի անգամ երեկոյան դեմ, երբ հատկապես շատ էր ժողովուրդը և Լուշկան դեսուդեն էր ընկնում, վառում ցուցադրակի վրայի լամպերը, միացնում բուի, նապաստակի, գունավոր կակաչի կամ հին նավթի լամպի ձև ունեցող փոքրիկ ննջարանային լամպերը, նրան ձայն տվեց Ռիտան ու նշան արավ սառնարանների կողմը: Լուշկան նայեց ու տեսավ իր առաջին գնորդին՝ մորթե ականջավոր գլխարկով տարեց մարդուն: Նա կանգնել իրեն էր նայում: Լուշկան դրան ոչ մի նշանակություն չտվեց: Երբ գործ չունես, կարող ես կատակել, շաղակրատել, որևէ հիմար բան հնարել: Մարդը երևի եկել էր սառնարան նայելու: Նոր տարվա առթիվ բոլորն էլ աշխատում են մի բան ձեռք բերել տան համար:

Իսկ հունվարյան ամենաառաջին օրերին նա նորից հայտնվեց: Այժմ արդեն խաղաղված ու դատարկված խանութում պարզ դարձավ. նա եկել էր Լուշկային նայելու:

Այս անգամ արդեն աղջիկները ուզածի չափ զվարճացան. «Մեր Վերոչկան կավալեր է ճարել», «Սպասիր, շուտով առաջարկություն կանի», «Չմոռանաս ծննդյան թիվը հարցնել»:

Բայց երբ նա նորից եկավ, արդեն ոչ ոք չէր ծիծաղում, բոլորը զայրանում էին. «Գտել է իր զույգը», «Կանգնել ու նայում է, մի տես ոնց է աչքերը չռել»:

Իսկ նա նորից մի քիչ կանգնեց, ոչինչ չասաց ու գնաց: Քսենյա Իվանովնան խոստացավ. «Թող մեկ էլ գա, ես նրա հետ առանձին կխոսեմ: Սրա՜ն տեսեք... չորացած սո՜ւնկ»:

Նոր տարին խանութին պարգև բերեց. գերակատարել էին սառնարանների ու լամպերի վաճառքի պլանը: Բայց Լուշկային նոր տարին ոչնչով չուրախացրեց: Ընդհակառակը՝ վշտացրեց:

Անցած տարվա աշխատանքի արդյունքներն ամփոփող ընդհանուր ժողով էր: Վարում էր խանութի դիրեկտորը, որը շատ կնմանվեր դպրոցի դիրեկտորուհուն, եթե չլինեին կրծքազարդը, ականջօղերն ու մատանիները:

Այստեղ էր և վերադասի ներկայացուցիչը. վարդագույն ճաղատով ողորկ մի տղամարդ: Երբ խոսեցին լամպերի վաճառքից ստացված բարձր գումարների մասին, Լուշկան թեթևակի շիկնեց. սպասում էր, որ հիմա կգովեն նաև իր աշխատանքը: Բայց նրա մասին ոչինչ չասացին: Իսկ թերությունները թվարկելիս ավագ վաճառողուհին ասաց, որ աշակերտուհի Լուկյանովա Վերան ընդհանրապես ջանասեր է, բայց աչքի է ընկնում գնորդների հետ երկար-բարակ խոսակցություններով, մի բան, որն՝ արգելակում է վաճառքի ընթացքը:

Լուշկան փորձեց պաշտպանվել. չէ՞ որ նա խորհուրդ է տալիս, օգնում է ապրանք ընտրելուն...



digitised by A.R.A.R.@

— Խորհուրդ տալու համար դու դեռ փոքր ես,—ընդհատեց նրան խեւ լամիտ Լարիսան:

— Իսկապես,— արձագանքեց դիրեկտորուհին,—մեր խնդիրն ապրանք վաճառելն է, պլան կատարելը, ոչ թե ճաշակ կրթելը:

— Դուք նրան ինքնասպասարկման բաժնին կցեք,— խորհուրդ տվեց վերադասի ներկայացուցիչը,—այնտեղ լավ ճաշակի մասին դասախոսություններ կարդալու առիթ չի լինի. խրոցը խրոց է, անջատիչը՝ անջատիչ...

Հաղթահարելով արցունքները, Լուշկան թարթեց աչքերը: Խոսում էին նրա մասին այնպես, կարծես նա ներկա չէր, կարծես դատարկ աթոռ էր նրանց առջև:

Հետևյալ օրը Լուշկային տարան էլեկտրամանրուքի բաժին, իսկ Ռիտային բերեցին Լարիսայի մոտ՝ լամպերի բաժին:

Մի անգամ, երբ Լուշկան ցուցափեղկի միջով թախծոտ նայում էր փետրվարյան մանր ձյան մեջ երևացող անցորդներին, խանութ մտավ նրա առաջին գնորդը:

«Լուշկայի երկրպագուն» կանգնեց սառնարանների մոտ, շփոթված նայեց լամպերին ու չգտնելով Լուշկային իր տեղում, հայացքը շրջեց խանութով մեկ, գտավ Լուշկային, գոհ խնդմնդաց ու արագ մոտեցավ:

— Կարելի՞ է մեկ րոպեով: Գործ ունեմ ձեզ հետ:

Լուշկան իր գործընկերուհուն ասաց՝ «Հիմա կգամ» ու իր այցելուի հետ մի կողմ քաշվեց:

— Մի տե՛ս, մի տե՛ս,—քչփչացին Ռիտան ու Լարիսան,— սունկը քաջացել է: Մի՞թե որևէ տեղ է հրավիրելու: Հիմա Քսենյան կշպպացնի ճակատին...

Իսկ Քսենյա Իվանովնան արդեն լցվում էր թշնամանքով, որը, բոցավառվելով, մղում էր նրան դեպի «սունկը»:

Բայց նա չհասցրեց հասնել Լուշկային ու նրա այցելուին, այցելուն արագ հատեց դահլիճն ու անհետացավ «դիրեկտոր» ցուցանակավոր դռան ետևում: Հինգ րոպեից նա շատ գոհ դուրս եկավ, մոտեցավ Լուշկային ու ասաց.

— Ամեն բան լավ է: Մի երկու ժամով կփոխարինենն, իսկ ընդմիջումից հետո կվերադառնաք: Շուտ հագնըվեք...

— Նա կգնա՞ այդ տիպի հետ,— Լարիսան սեղմեց շուրթերը:

— Ո՞ւր հրավիրեց նրան,— տառապում էր Ռիտան:

— Ուր էլ որ հրավիրեր, ես ոչ մի դեպքում չէի գնա,—զայրանում էր Ալլան:

Ախ, ի՜նչ անհամբերությամբ էին նրանք ուզում իմանալ, թե այդ ո՞ւր սլացավ Լուշկան կայտառ քայլվածքով ու այդքան ուրախ:

Եվ իսկապես, ո՞ւր:

Լուշկան վերադարձավ ճիշտ ընդմիջման վերջում՝ քաղցած, բուլկու մի կտոր ձեռքին, ուրախ: Քիչ ժամանակ լուռ մնաց, հետո չդիմացավ, հայտնեց, որ փոխադրվում է աշխատանքի կոլտնտեսապրանքների նոր, մեծ խանութի խաղալիքների բաժինը: Այդ խանութի դիրեկտորը՝ «քեռին» նրան աշխատանքի է հրավիրել, իսկ «Լույսի» դիրեկտորուհին դեմ չի, թողնում է:

— Ուրեմն, նապաստակներ ու փիսիկնե՞ր պիտի վաճառես,—հարցրեց Ռիտան:

— Ե՛վ փիսիկներ, և՛ շնիկներ, և՛ գնդակներ, և՛ տիկնիկներ...—ուրախ վրա բերեց Լուշկան:

— Ե՛վ արջուկներ,— ավելացրեց Ալլան:

— Օ՜,—Լուշկան հանկարծ կլորացրեց աչքերն ու ծիծաղեց:—Այո՜, իհարկե, և՛ արջուկներ:

— Իսկ ի՞նչ է, աղջիկնե՛ր, դա բոլորովին էլ վատ չէ...



digitised by A.R.A.R.@

Աղջիկները սկսեցին քննարկել, թե ո՞ր առնտուրն է ավելի լավ: Բայց Լուշկան արդեն չէր լսում նրանց: Նա մտքում իր նոր ապրանքներն էր դասավորում ստելլաժների ու պոդիումի՝ մեծ դահլիճի մեջտեղում հատակին կառուցած բարձրության վրա:

Նա որոշում էր, թե ինչպես կընդունի առաջին գնորդներին: Նրան առանձնապես հուզում էր հանդիպումը ամենափոքրերի հետ: «Պետք է դահլիճում ցածրիկ սեղաններ ու աթոռներ շարել, իսկ սեղանների վրա խաղալիքներ դնել: Քանի որ դա ինքնասպասարկում է, երեխաները կկարողանան ձեռք տալ և ընտրելիս նույնիսկ մի քիչ խաղալ նրանցով...»

Ուշ երեկոյան, խանութի դիրեկտորը՝ Պավել Իվանովիչ Մեդվեդը իր տանը նստած՝ կաթնագույն լամպի լույսի տակ թղթեր էր դասավորում:

«Այդ աղջնակը՝ պստիկ ճուտիկը, իմ լավագույն գյուտն է,—մտածում էր Մեդվեդը,—նա անշուշտ տաղանդ է»: Նա Լուշկային պատկերացնում էր երեխաների մեջ, խաղալիքներով լի դարակների մոտ, լսում էր նրա արագախոս, փաղաքուշ ձայնը, տեսնում բարի, ուշադիր, գնորդին օգնելու ջերմ ցանկությամբ լի նրա մեծ պարզ աչքերը:

Լուշկան այդ ժամանակ արդեն քնած էր: Նա մի խառնիխուռն զվարճալի երազ էր տեսնում: Գույնզգույն լուսամփոփների վրա նա տիկնիկներ, թավշյա արջուկներ ու նապաստակներ էր նստեցնում: Լուսամփոփները կարուսելների պես պտտվում էին, բայց ոչ թե ինքնուրույն՝ Լուշկան պետք է նրանց պտտեցներ, և ստիպված էր մեկից վազել դեպի մյուսը և միևնույն ժամանակ չեկեր դուրս գրել: Գնորդները շատ էին, բոլորն էլ ուզում էին խաղալիքներով լուսամփոփներ գնել: Լուշկան վազվզում էր պտտվող լուսամփոփների միջև և ոչ թե հասարակ վազվզում, այլ սահում էր, ձևավոր չմշկասահքի նման, ոտքերով զանազան ճարպիկ շարժումներ անելով: Նա ուրախ էր, ծիծաղը գալիս էր:

## Պատանություն

ՆՈՐԱՅՐ ԵՓՐԵՄՅԱՆ

Պատանությունս ինձ գտավ այնտեղ,
Այն ահեղ կռվի արնոտ դաշտերում,
Աշակերտական պայուսակի տեղ՝
Այժմ իմ ուսին զենք էի կրում:

Մեր դասարանը խրամատն էր թաց,
Դասընկերներս՝ զինվորներն արի,
Վառ էր հույսը մեր, ինչպես լուսաբաց,
Մենք կռվում էինք հանուն այս օրի:

Եվ հասունության ատեստատը մեր՝
Մեծ հաղթանակն էր, որ բերեցինք տուն:
Հիմա անմոռաց մի հուշ ես դարձել,
Մարտերում կոփված իմ պատանություն:



digitised by A.R.A.R.@



# Ռափայել Պատկանյան

## (1830—1892)

Նա եղել է հայ ժողովրդի ազգային ազատագրության հզոր երգիչներից, և ժամանակակիցների վկայությամբ ժողովրդի սերը նրա նկատմամբ պաշտամունքի էր հասնում: Ծնվել է Նոր Նախիջևանի Պատկանյան նշանավոր ընտանիքում, պապը և հայրը ճանաչված մանկավարժներ էին, Քերովբե հորեղբոր որդին՝ նշանավոր հայագետ, Միքայել հորեղբայրը՝ նշանավոր թատերական գործիչ, Հովհաննես եղբայրը՝ նկարիչ:

Ինքը կրթություն էր ստացել Լազարյան ճեմարանում, ապա ուսումը շարունակել Դորպատի, Մոսկվայի և Պետերբուրգի համալսարաններում, գտնվելով ռուսական հեղափոխական մտքի շիկացած ոլորտներում:

Դեռևս ուսանող՝ գրեց իր նշանավոր «Արաքսի արտասուքը» բանաստեղծությունը: Ժողովուրդն հափշտակությամբ ընդունելով այն, երգի վերածեց և մինչև օրս էլ մեր ժողովրդական ամենասրտառուչ, ամենասիրված բարձրարվեստ երգերից է: Րաֆֆին այդ բանաստեղծությունը կոչել է ոչ այլ կերպ, քան՝ «հայ պոեզիայի թագուհի»:

Իր ժողովրդի ցավերով խորապես ապրող ազատության երգիչը, իր արձակ և չափածո գործերում անողոքաբար խարազանում և անարգում էր նաև ուսումնական և հարուստ խավերին, որոնք ազգօգուտ ոչինչ չէին անում, ծաղրում էր բիրդանաղայնությունն ու քաղքենիությունը:

«Նրա հայրենասիրական-հրապարակախոսական բոցավառ երգերով տոգորված էր մեր երկրի հոգեկան մթնոլորտը»,—գրել է Ավետիք Իսահակյանը:

«Պատկանյանի ստեղծագործության մասին արդարացի դատելու համար անհրաժեշտ է պատկերացում ունենալ այն ժողովրդի ճակատագրի մասին, որի մեջ ստեղծագործել և որին նվիրված են եղել նրա երգերը»,—գրել է ռուս նշանավոր բանաստեղծ Յուրի Վեսելովսկին:

Իսկ հայոց պատմական ճակատագրին և հայ պոեզիային քաջատեղյակ ռուս մեծ բանաստեղծ Վալերի Բրյուսովն ասել է՝ «Պոետը կարծես դարձավ իր ժողովրդի ձայնը, նա լեզու տվեց համրացած մասսային, և ամեն ընթերցող զգում էր, թե կարծես ինքն է կարդացած բանաստեղծության հեղինակը: Պատկանյանի բանաստեղծություններում ամենից առաջ և ամենից ավելի, ուսուցչի ձայնն է, որին այնքան կարիք ուներ հայ ժողովուրդն այն ժամանակ»:

Մեծ էր Պատկանյանի բերած ավանդը նաև հայ ժողովրդի լուսավորության գործին: Նա ավելի քան 25 տարի նվիրվեց մանկավարժությանը: Գրքեց մի շարք դասագրքեր: Գրեց շատ բանաստեղծություններ մանուկների համար, որոնց ըզգալի մասը, ավելի քան հարյուր տարի անց, այսօր էլ հնչում են մեր մանկապարտեզների երեխաների շրթունքներին:

Պատկանյանը չտեսավ հայ ժողովրդի ազատությանը, վերածնության արշալույսը: Բայց ժողովուրդը թարմ է պահում իր զավակի հիշատակը: Այս տարի մեծ շուքով տոնվեց նրա ծննդյան 150-րդ տարելիցը:



digitised by A.R.A.R.@

## ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՌԱՓԱՅԵԼ ՊԱՏԿԱՆՅԱՆ

### ԱՆՁՐԵՎ

Անձրև՛, անձրև՛, ցա՛ծ արի,
Բըսցո՛ւր ցորենն ու գարի,
Բըսցո՛ւր ծաղիկ, կանաչ խոտ,
Ավլե՛ փոշի, մաքրե՛ օդ:
Անձրև՛, անձրև՛, ցա՛ծ արի,
Գալըդ ամենուս բարի:

### ԽԵԼՈՔ ԵՐԵԽԱ

Խելոք երեխան այսպես պիտ լինի.
Կանուխ պիտ զարթե, շուտ քուն պիտ մտնի,
Պիտի չի մաշե սիրտը հորն ու մոր,
Դպրոց պիտ երթա, կարդա ամեն օր:

### ԱՐԵՎ

Արև՛, արև՛, արի դո՛ւս,
Քեզ բերել ենք աչքի-լույս,
Քու քուրիկը՝ լուսինկան
Բերեց չամիչ մեկ աման:
Ամ [illegible]

### ԲԱԴԻԿ

digitised by A.R.A.R.@

— Բադի՞կ-բադի՞կ,
Կարմիր թաթիկ,
Ո՞ւր ես գնում կամաց-կամաց,
Ձագուկներդ չորս կողմդ առած:
— Ես գնում եմ ջուր գտնելու,
Ձագուկներիս լվանալու.
Ձագուկներս մաքուր-մաքուր,
Տղոց երեսն աղտ է ու մուր:

Չամիչն աչքերես կորավ:
Բա՛ց երեսըդ, արեգակ,
Մեկ բուռ չամիչ քեզ կուտանք...
Օ՜խ, արևին խաբեցինք,
Ամպի տակեն հանեցինք:

# ՈՐՍՈՐԴ

Ջորերու մեջեն գետակ կսողար,
Գետակին մեջը բադիկ կլողար.
Բադիկը մայր է, ձագերը չորս դին
Ճչալով ջրի մեջ կըոստոստին:
Որսորդը տեսավ բադն ու ձագերը,
Կապարճեն հանեց սուր-սուր նետերը,
Աղեղան լարը քաշեց... ու հանկարծ
Խղճաց ձագերուն, նետը ընկավ ցած:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



Լյուսի Մյուլաճյանը ապրում և ստեղծագործում է Հալեպում: Ստորև տպագրում ենք նրա մանկական պատմվածքներից մեկը, ուր ներկայացված է դպրոցականների փոխհարաբերության մի տխուր պատկեր:

# ԱՌԱՋԻՆ ԴԱՍԱԳԻՐՔՍ

— Այս թղթիկի վրա,— ասաց ուսուցչուհին, բառերը հատ-հատ շեշտելով,— գրված է դասագրքի անունը: Հայրիկի՛դ տուր, որ գնի քեզի համար:

Թուղթը չորս ծալ արեց ու գրպանս դնելով, մազերս շոյեց.

— Չմոռանաս,— ավելացրեց:

Մինչև տուն հասա, ուսուցչուհու հանձնարարությունը բոլորովին մտքիցս թռավ:

Հաջորդ օրը, երբ դասարան մտա ու տեսա ուսուցչուհուն, անմիջապես ձեռքս գրպանս տարա: Թուղթն այնտեղ էր:

— Գրքերը հանեցեք և առաջին էջը բացեք,— հրահանգեց ուսուցչուհին:

Դասարանը լցվեց բացվող-փակվող պայուսակների խուլ աղմուկով:

Ուսուցչուհին հերթով ստուգում էր, թե ով գիրք ունի, ով չունի:

Ինձնից բացի, բոլորն ունեին:

— Ո՞ւր է գիրքդ, Նորի՛կ,— հարցրեց նա, հասնելով ինձ:

Ոտքի ելա հանցավորի զգացումով ու լալու պատրաստ:

— Վաղը անպայման գիրք ունենաս,— ասաց հանդիմանական շեշտով:— Հիմա Սոնիկի հետ միասին նստի՛ր դասին:

Մոտեցա Սոնիկին: Սոնիկը մեջքը դարձրեց ու գրքի բացված առաջին էջը պահեց իմ տեսողությունից:

— Սոնի՛կ,— խնդրեցի:

— Ո՛չ, գիրքը իմս է, չեմ ուզում, որ նայես:

— Բայց... ուսուցչուհին,— պնդեցի ես:

— Գիրքը իմս է,— կրկնեց Սոնիկը չարացած:— Չեմ թողնում, որ նայես:

— Նորի՛կ, Սոնի՛կ, մի՛ խոսեք,— սաստեց ուսուցչուհին,— կրկնեցե՛ք ինձ հետ՝ ա, ա, ա:

Դասարանը կրկնեց՝ ա, ա, ա:

— Սե՛ք՝ ս, ս,ս:

Դասարանը կրկնեց՝ ս, ս, ս:

Մենք այդ օրը սովորեցինք այդ երկու տառը: Ես էլ սովորեցի, բայց տառերի տեսքին անծանոթ մնացի:

Այնքա՛ն հուզված ու ազդված էի: Տուն վերադարձա ու մորս լալով պատմեցի պատահածը:

Մայրս սրբեց արցունքներս:

— Հիմա գրախանութ կգնանք ու կգնենք:

Գրախանութի դիմաց աշակերտություն խռնված էր: Շատ սպասեցինք, համբերությունս հատավ: Սկսեցի լալ:

— Երեխան լալիս է,— ձայնեց մայրս սպիտակահեր գրավաճառին,— բարի եղեք տվեք գիրքը, գնանք:

Աշակերտները ճամփա բացեցին, մայրս հառաջացավ գրքի արժեքը տալու:



digitised by A.R.A.R.@

Չգիտեմ ինչպես և ինչու հափշտակեցի գիրքը մորս ձեռքից ու կրծքիս սեղմեցի: «Ա» և «ս» տառերը, որ Սոնիկը մերժել էր ցույց տալ, հիմա իմս էին, ոչ միայն «ա» և «ս» տառերը, այլ հայերենի ողջ այբուբենը:

Հետագայում ես գրքեր շատ ունեցա, բայց առաջին դասագրքիս պարգևած երջանկությունը դեռ երեկվա նման հիշում եմ:

Այդ գիշեր գիրքը բարձիս տակ քնեցի: Հաջորդ առավոտ Սոնիկը հիացավ գրքիս կապույտ շապիկով, որ մայրս էր քաշել:

— Նայեմ,— ասաց:

— Ո՛չ, գիրքը իմս է, չեմ ուզում, որ նայես:

— Սոնի՛կ, Նորի՛կ, հերիք խոսեք, դասի՛ն հետևեցեք, կրկնեցե՛ք.

— Ա, ա, ա:

— Ս, ս, ս:

Սոնիկը մեջքը դարձրեց ինձ:

Դասարանը կրկնեց. ա, ա, ա, ս, ս, ս...

Ինձ այնպես թվաց, որ ամենից բարձրը իմ ձայնն էր ու կարծես դասարանի մեջ ինձնից զատ ուրիշ գիրք ունեցող չկար:

*Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



# ԿՈՒՅՐՆ ՈՒ ԺԼԱՏԸ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Մի կույր ծերուկ
Առած զամբյուղ՝
Աշնան մի օր
Մտավ մի գյուղ:

Փարթամ այգի,
Հասուն մրգեր,
Բույրից դյութվեց
Խեղճ մարդը ծեր:

Մի կերպ այգի
Մտավ ծերը:
— Ո՞վ ես,— ձայնեց
Այգու տերը:

— Այգուդ միրգը
Թող լինի շատ,
Ինձ բաժին տուր
Մի երկու հատ...

Տերը ասաց.
—Աստված վկա,
Ծառի վրա
Ոչինչ չկա...

Մեկ էլ մի տանձ,
Հասուն ու մեծ,
Ընկավ կույրի
Զամբյուղի մեջ:

Կույրը վերցրեց
Տանձը ընկած
Ու պարզելով
Տիրոջն՝ ասաց.

— Վերցրո՛ւ, ժլա՛տ,
Հանգիստ մնա,
Քո միրգը ինձ
Կոկ չի գնա:



digitised by A.R.A.R.@





Լուսանկարը՝
ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# ԳՐԱԴԱՐԱՆԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑ ՇԵՆՔԸ

Մայրաքաղաքի պատանի ընթերցողների առջև իր դռները բացեց Խնկո-Ապոր անվան հանրապետական մանկական գրադարանի նորակառույց, գեղեցիկ շենքը:

Նորակառույցի սպիտակ մարմարապատ աստիճանները տանում են դեպի գեղեցիկ ձևավորված և կահավորված նախասրահները, աբոնենտային, ընթերցանության, հեքիաթի և երաժշտության սրահները: Հեքիաթի սրահում հեքիաթներ կպատմվեն նախադպրոցականների համար, իսկ երաժշտության սրահում պատանիները կարող են լսել իրենց ցանկացած ձայնապնակը կամ ծանոթանալ իրենց սիրած կոմպոզիտորի կյանքի ու ստեղծագործության հետ: Ճաշակով ձևավորված սպասարկման բաժինները, մամուլի բաժինը և ըստ դասարանների առանձնացված ընթերցասրահները արդեն պատրաստ են ընդունելու 20 հազարից ավելի ընթերցողների:

200 տեղանոց դահլիճում կկազմակերպվեն հանդիպումներ, ցերեկույթներ, երեկույթներ: Գրադարանում գործելու են բազմաթիվ խմբակներ, իր պարապմունքները է սկսելու գրադարանի գեղագիտության դպրոցը: Շինության բակում կառուցվելու են ամառային ընթերցասրահ, բարեկամության այգի և այլն:

Խնկո-Ապոր անվան հանրապետական գրադարանի նորակառույց շենքը գտնվում է Տերյան փողոցի վրա՝ օպերայի շենքի դիմաց, տիկնիկային թատրոնի և մանկական պատկերասրահի հարևանությամբ:

Գրադարանի նոր շենքի բացումը առավել նշանակալից էր նրանով, որ համընկավ սիրելի գրողի՝ Խնկո-Ապոր ծննդյան 100-ամյակին, հանդիսանալով նրա հիշատակին կանգնեցված լավագույն հուշարձանը:



digitised by A.R.A.R.@

# ԵՐԲ ՎԵՐՋԱՆՈՒՄ Է ԽՈՍՔԸ, ՍԿՍՎՈՒՄ Է ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ



ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

## 3. ՀԻՆ ԵԳԻՊՏՈՍ

Դեռևս իր պատմության արևածագին, քարե դարում, մարդն ստեղծել է երաժշտական առաջին պարզունակ գործիքները, երգերն ու պարերը: Դրանց ավելի քան համեստ արտահայտչամիջոցների մասին են վկայում պեղումների ժամանակ հայտնաբերված խեցե-շեփորը, սրինգը՝ ոսկրից, երաժշտական աղեղը...

Հազարամյակների հոլովական ու քարքարոտ ճանապարհ է անցել նախնադարյան մարդը, մինչ հասել է քաղաքակրթության: Դրա ակունքները բերում են մեզ հին Եգիպտոս, ուր մ. թ. ա. 3-րդից 1-ին հազարամյակներում ստեղծվել է համաշխարհային արվեստի պատմության ամենափայլուն էջերից մեկը: Ութսունի հասնող խստաշունչ բուրգերը, Լուքսորի, Կարնակի Մեմֆիսի հոյակերտ տաճարները մարմնավորում են եգիպտական ժողովրդի ճարտարապետական հանճարը:

Երաժշտությունը նույնպես նշանակալի տեղ է գրավել հին եգիպտացիների կյանքում: Այդ են վկայում պահպանված երաժշտական գործիքները, խորաքանդակներն ու որմնանկարները՝ երաժշտության թեմաներով, գրական հուշարձանները: Հին եգիպտական մեղեդիների արձագանքները դեռևս կենդանի են այժմյան Եգիպտոսի և Եթովպիայի ժողովուրդների երաժշտության մեջ: Եգիպտական շինարար ժողովուրդը ստեղծել է անհամար աշխատանքային երգեր: Դամբարանների պատերին հանդիպում ենք կալսողների, բեռնակիրների, հացթուխների, քարտաշների երգերից վերցված տողերի: Նրանք աչքի են ընկնում խիստ զուսպ պարզությամբ: Կարիք չկա, թերևս, հիշատակելու Նեղոսի հսկայական դերը երկրի կյանքում: Գետի ափերին, ջրերի վրա, ոռոգման աշխատանքների ընթացքում ծնունդ առած երգերը առավել տարածված էին հին Եգիպտոսում: Հին եգիպտական երգարվեստի համբավը ժամանակին դուրս է եկել երկրի սահմաններից:

Խոսելով հին եգիպտական արվեստի մասին, անհնար է շրջանցել ժողովրդական ստեղծագործության այնպիսի վառ և ինքնատիպ երևույթ, ինչպիսիք պասիոնները, կամ միստերիաները էին:

Թատերական բնույթ ունեցող, երաժշտությամբ, երգով ու պարով ուղեկցվող մասսայական ժողովրդական այս արարողությունները կապված էին բնության ուժերը անձնավորող աստվածներ Օսիրիսի, Իզիսի, Տոտի պաշտամունքի հետ:

digitised by A.R.A.R.@



Առանձնապես տպավորիչ էին կանացի ողբերգերը մահացած Օսիրիսի վրա, որ դրամատիկ գործողության կիզակետն էին հանդիսանում: Արարողությունների դրամատիկական (թատերական բնույթի) տեսարանները հիմնականում ռեալ կյանքի ու կենցաղի պատկերներ էին վերարտադրում: Ակունքներով ժողովրդական, պասիոններ-միստերիաներում գեղարվեստորեն իմաստավորվում էին կրոնական դիցաբանական ասքերը և վերջիններիս հաղորդվում էր կենդանի կյանքի շունչ ու բովանդակություն: Ծիսագեղարվեստական այս արարողությունները ոչ միայն հանդիսացան հին եգիպտական ժողովրդական ստեղծագործության բարձրագույն արտահայտումը, այլև ստեղծեցին հետագայում Եվրոպայի ժողովուրդների կողմից ընկալված գեղարվեստական բարձրարժեք ավանդույթ:

Եգիպտացիների պրոֆեսիոնալ (մասնագետների կողմից ստեղծված) երաժշտությունը, հին

digitised by A.R.A.R.@

ժամանակներում լիովին քրմերի ձեռքում էր: Բնականաբար, նրա հիմնական տարատեսակները էին կրոնական-պաշտամունքային հիմները, մաղթանքային, աղոթքային եղանակները: Ռա (արևի), Տոտ (լուսնի), Իզիս (Սիրիուս աստղ) աստվածների տաճարներում, ուր անսահման հարստություն էր կուտակված, արտակարգ ճոխությամբ էին իրականացվում կրոնական ծիսակատարությունները:

Բուրգերի պատերին, հին պապիրուսի վրա, կրոնական ժողովածուներում պահպանվել են եգիպտական աստվածներին ձոնված հիմներից տողեր, որոնց երաժշտությունը, ամենայն հավանականությամբ գրի չի առնվել: Այն արտահայտվել է խմբավարի ձեռքերի շարժման հատուկ սիստեմի մեջ և այդ միջոցով փոխանցվել սերնդեսերունդ: Հետագայում սիստեմը տարածվել է մշակութային աշխարհով մեկ, ստանալով խիրոնոմիկ անվանումը:

Մ. թ. ա. երկրորդ հազարամյակից սկսած եգիպտական արվեստը զարգացել է պետական իշխանության բարձրացման, խոշոր ստրկատերերի հարստացման և կուլտուրական մակարդակի աճի պայմաններում: Նկատելի վերելք է ապրել աշխարհիկ պրոֆեսիոնալ երաժշտությունը: Փարավոնների պալատներին կից եղել են երգիչներից ու գործիքային կատարողներից կազմված անսամբլներ ու փոքրիկ երգչախմբեր: Պահպանվել են խմբերգային երգեցողության 9 պատկերներ, երգել են նստած, ափերով խփելով տակտը (չափ տալով): Պալատական երաժշտության գերիշխող տեսակը թագավորին փառաբանող հանդիսավոր երգ-հիմնն է եղել:

Եգիպտոսն ունեցել է բարձր զարգացած գործիքային մշակույթ: Նվագել են աղեղային և անկյունաձև տավիղների, երկայնահատ ֆլեյտայի, կրկնակի հոբոյի (հինավուրց տեսակ), ինքնատիպ լարային գործիք լյուտնյայի վրա: Առավել զարգացման է հասել տավղային արվեստը: Տավղի լարերը, պատրաստված լինելով խոշոր արմավենիների թելերից, նուրբ և չափազանց երգային ձայն են արձակել: Տավիղը զարդարել է ամենանշանավոր հանդեսները: Այն մասին, թե ինչպիսի մեծ պատվով էին շրջապատված տավիղն ու տավղային արվեստը, վկայում է հին եգիպտական պոեզիայի գլուխ-գործոցներից մեկը՝ «Տավղահարի երգը»:

Մեր թվարկության մոտ ժամանակաշրջանում, եգիպտական թագավորության թուլացման հետ մեկտեղ, իր երբեմնի փայլն ու ինքնատիպությունն է սկսում կորցնել պրոֆեսիոնալ երաժշտական արվեստը: Այն հեղեղվում է օտարերկրյա (հատկապես հունական) ազդեցություններով: Պետք է ասել, սակայն, որ մակեդոնյան նվաճումից հետո էլ եգիպտական երաժշտական մշակույթը միաժամանակ մրցակցել է հունականի հետ:

Եգիպտական փառաբանված քաղաք Ալեքսանդրիան մ. թ. առաջ 3-րդ դարից դառնում է անտիկ աշխարհի ճանաչված մշակութային կենտրոն, տվել է երաժշտական արվեստին հայտնի տեսաբաններ՝ Էվկլիդ, Դիդիմի, Պտողոմեոս:

Ալեքսանդրիայի ավերումը և, հատկապես, հին աշխարհի խոշորագույն ալեքսանդրյան գրադարանի կործանումը, ուր պահպանվում էին շատ երկրների ու դարաշրջանների գեղարվեստական, այդ թվում երաժշտական մշակույթի հուշարձաններ, անդառնալի կորուստ հանդիսացավ մարդկության համար:



digitised by A.R.A.R.@

# ԱՄԵՆ ՏԱՐՎԱ ԳՈՃԻՆ

ՎԱՆՈ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

Դեկտեմբերի վերջին տասնօրյակին Սաթենիկ տատը աչքաթող է անում հավերին, շանը, ոչխարներին, անգամ կովին և զբաղվում է Մաշո խոզով: Սաթենիկ տատը նույն անունն է տալիս ամեն տարվա գոճուն: Ամեն տարի նրա Դավիթ որդին անտառապահ Սիմոնի մերունի տակից կտրում բերում է մեկ ամսական գոճուն, և Սաթենիկ տատը անցած տարվա նման, նախանցած տարվա նման, անունը դնում է Մաշո: Թվում է, արդեն քսան տարի Սիմոնը նույն մերունն է պահում, Դավիթը քսան տարի նույն գոճին է բերում:

Երբեք չի պատահել, որ Դավիթը աշխատանքից գալիս, ձեռքի հետ բերի գոճին, ինչպես գյուղի ճաշարանից միս է բերում: Չի եղել, որ մտնի տուն ու ասի. «Գոճին բերել եմ, գնացեք տեսե՛ք»: Այդ բանին պատրաստվում են նախօրոք: Ապրիլի սկզբներից տնեցիները՝ մեծ ու փոքր արդեն գիտեն, որ իրենց Մաշոն, այսինքն, ոչ թե Մաշոն, այլ Սիմոնի մերունի ութ, ինը կամ տասը խոճկորներից մեկը, դեռևս անանուն ու մյուսներից չջոկվող, մոր կուրծքը դնչահարելով մեծանում է: Մաշոն մեծանում է իր նմանների մեջ, վաղօրոք կնքած անունով, անունն ու ինքը ապրում են առանձին, քանի դեռ անտառապահ Սիմոնը չի բռնել նրա հետին ոտքերից՝ Դավիթի պահած պարկը գցելու համար: Ութ, ինը կամ տասը խոճկորներից մեկը սպրդում է անտառապահ Սիմոնի ձեռքից, և Մաշո անունը ընկնում է այդ մեկի վրայից: Ուրեմն, կարելի է ասել, որ ութ, ինը կամ տասը Մաշո, մոր կրծքերը դնչահարելով, մեծանում են և հենց որ անտառապահ Սիմոնը բռնեց մեկի հետին ոտքերից, մնացած բոլորի վրայից անունը ընկնում և կպչում է այդ մեկին:

Մաշո գոճին, մորական կաթի համն ու հոտը ռունգերին, դեգերում է անծանոթ բակում, շուլալվում է երեխաների ոտքերին, դունչը քսմսում է ամեն փափուկ բանի, մինչև որ սովորում է գարու ալյուրի շիլային, ապա և գարուն, ոտքերը քիչ-քիչ պնդանում են, խելքը գլուխն է գալիս և սկսում է դնչով հողը փորել:

Բակում վխտացող կենդանական աշխարհից միայն Մաշոն է, որ չի վախենում շղթայակապ շնից: Բայց նրա խիզախությունը գնահատող չկա, նրա խիզախությունը իզուր է անցնում, որովհետև Սևուկ շունը բացահայտ արհամարհում է նրան, չի հաչում վրան կերամանին մոտենալիս, անգամ չի գռմռում ոսկոր կրծելիս, այլ միայն խրատելու պես, թաթով հասցնում է համառ ու երկար դնչին՝ հասկացնելու համար, որ ոսկորը նրա ցեղի կերակուրը չէ, թող գնա իր ուտելիքը ճարի:

Առհասարակ, բակում ամեն կենդանի արարած կա՛մ զվարճանում է Մաշոյի հիմարությունների վրա, կա՛մ արհամարհում: Միայն Սաթենիկ տատն է, որ սիրում է նրան: Եվ Մաշոն հասկանում է դա: Ամեն տարի, ամեն նոր Մաշո հասկանում է:

Մաշոն հասկանում ու արդեն պոկ չի գալիս Սաթենիկ տատից: Սաթենիկ տատը լեզու է սովորեցնում նրան: Ասում է. «Մաշո՛, ժամանակ չունեմ, գնա՛ քո բանին», և Մաշոն գնում է իր բանին: «Մաշո՛, գնանք մի քիչ էլ կանաչ արածի», և Մաշոն պոչը ոլորելով



digitised by A.R.A.R.@

բնկնում է առաջ: Պառկիր՝ պառկում է, վեր կաց՝ վեր է կենում... Եվ չի սիրում Մաշոն, որ դնչին քացով խփում են: Ուղղակի խոզություն են անում մարդիկ, երբ թեկուզ խոզի հետ խոսում են քացով: Մաշոն չի հասկանում աքացու լեզուն, ի պատասխան շուռ է տալիս պատահած ամանչամանը և «Դե խոզությունը հիմա տեսեք»—խըռխըռալով փախչում է Մաշոն:

Սաթենիկ տատի փեշերից կաթի բույր է գալիս, եգիպտացորենի, գարու գժվելու բույր է գալիս: Բույրերը առած ռունգերին՝ Մաշոն քայլում է տատի կողքով, գնում է կանաչ արոտի: «Մաշո՛ ջան, արի՛ Լուսերի դռնով գընանք»,—ասում է Սաթենիկ տատը ու թեքվում գնում են Լուսերի դռնով անցնելու:

Լուսերը անատամ նայում է Մաշոյին և ասում.

— Երկու ամիս էլ որ պահեք, երկու փութ մաքուր միս կունենա:

— Կունենա:— Ամեն անգամ խոսքը անպատասխան չթողնելու համար ասում է Սաթենիկ տատը: Ամեն անգամ ասում է վախով, թե Մաշոն հանկարծ կհասկանա:

«Մաշո՛ ջան,— գոճու հետ խոսում է Սաթենիկ տատը,— չգիտես, որ ծընված օրից մարդիկ քեզ շամփուրի վրա են տեսնում, քո մեծանալը շամփուրներով են չափում: Թե իմանայիր, կթքեիր նրանց տված կերի վրա, վերջում քթիցդ են բերելու: Ինչ լա՜վ է չգիտես, Մաշո՛ ջան»:

Նոր տարու նախորդող կիրակի օրը խոզերի կոտորած է սկսվում գյուղում: Ում կերը վերջանում է, չի էլ սպասում կիրակուն: Եվ դեկտեմբերի սառնաշունչ օդը թրատվում է այս ու այնտեղից լսվող օրհասական ճղղոցներից:

Այդ օրերին, առավոտ շուտ, քանի դեռ չեն արթնացել դանակավոր մարդիկ, քանի դեռ Մաշոյի հերթը չի հասել, Սաթենիկ տատը գոճուն տանում դուրս է գալիս գյուղից: Սաթենիկ տատը չի ուզում, որ Մաշոն այդ աղմուկի ողջ սարսափը հասկանա: Սաթենիկ տատը գյուղից դուրս շրջում է Մաշոյի հետ, և կիսաձայն խոսում է հետը. «Մաշո՛ ջան, համբերի՜, համբերի՜, գոճի՛ ջան: Եկող տարի քեզ լավ կպահեմ, օրումեջ կլողացնեմ-կքերեմ, ալյուրը կմաղեմ ճաշդ եփելուց առաջ, ամեն օր արոտի կբերեմ, ամենալավ պատառը քեզ կտամ: Համբերի, գոճի՛ ջան: Համբերի՛ մինչև եկող տարի»:

*Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ*





digitised by A.R.A.R.@



# ԱՆՊԱՅՄԱՆ ՏԵՍԱԾ ԿԼԻՆԵՔ

*(Հեքիաթ)*

*ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ*

Ջրոսայգում, պատվանդանի վրա կանգնած ճերմակ մարմարե արձանը մի օր հոգնեց: Հոգնեց գիշեր-ցերեկ այդպես կանգնելուց, շարունակ նույն ծառուղին տեսնելուց: Դա մի շատ գեղեցիկ կնոջ արձան էր, առատ մազերը բրգաձև կուտակած գլխին: Իրանը փոքր-ինչ առաջ էր թեքված, ասես ուզում էր գնալ մեկի ետևից: Աջ ձեռքը նույնպես թեթևակի պարզված էր առաջ, կարծես ուզում էր ետ դարձնել այդ հեռացողին:

— Աստվա՜ծ իմ, — կամացուկ հառաչեց արձանը,—ինչ դժվա՜ր է այսպես ապրել:

Եվ նա լաց եղավ, բայց քանի որ արձանը արցունքներ չուներ՝ նրա աչքերը չոր մնացին, միայն ձախ կրծքի տակ, որտեղ սիրտն էր, ճերմակ մարմարը քնքուշ վարդագունեց:

Նրա գիսակներում կանգնած փարթամ մայրին սկզբում գլխի չընկավ, որ խոսողը արձանն է, բայց հետո հասկացավ:

— Այդ դո՞ւ ես,—խըշշաց նա,—դու գեղեցիկ ես, մարմարյա, երկար կապրես, էլ ինչո՞ւ ես լալիս:

— Այսպես ապրել էլ չեմ ուզում,— աղաղակեց արձանը,—հերիք է:—Եվ տերևը, որ ծվարել էր նրա ուսին, սահեց ու ընկավ ցած:

— Դո՛ւ, շատ քան տեսած մայրի՛, ամեն գարնան ծաղկում ես, ամռանը կանաչում, աշնանը տերևաթափ լինում և ձմռանը դառնում ինձ նման ճեպ-ճերմակ: Իսկ ես՝ անվերջ նույնը, ոչ լալ կարող եմ, ոչ ծիծաղել...

Մայրին լռում էր, արձանը ճիշտ էր: Բայց ի՞նչ կարելի էր անել, որ նա գոնե չզգար իր դժբախտությունը:

— Մի՛ մտածիր,— ասաց մայրին,—քո ճակատին էլ երևի այդ է գրված, ուրախացի՛ր, որ թլնդանոթ չես ծնվել:

Արձանը լռում էր:

Այդ ամբողջ խոսակցությունը լսում էր կախարդ բուն:

— Գեղեցկուհի՛, դու կարող ես կենդանանալ,—ասաց նա,—բայց մի պայմանով: Դու ինձ պիտի տաս քո թևերը:

— Թևե՞րը,— սարսափեց արձանը,—ի՞նչ պիտի անեմ ես առանց թևերի:



digitised by A.R.A.R.@

Բուն լուռ էր:

— Տարիների իմ երազանքն է եղել կենդանանալ, բայց... առանց թևերի՞:

Նա նայեց իր ճերմակ, գեղեցիկ թևերին, որ վերջանում էին նուրբ մատներով:

— Անհնարին բան չկա,—կարճ կապեց բուն և ամբողջ երեկո էլ բերանը չբացեց:

Օրերով մտածում էր արձանը. ի՜նչ գայթակղիչ է կենդանանալը, ծիծաղելն ու լալը, ցոտին մրսել, տապին՝ շոգել, թռչվել անձրևից, կրել կրծքի տակ տրոփող սիրտ:

Այնքան մեծ էր կենդանանալու ցանկությունը, որ նա, ի վերջո, համաձայնեց: Եվ ահա բուն սաստ արթնացրեց նրան խորը քնից... Նա զգաց, որ մերկ է ու մրսում է: Ճերմակ մարմարե մարմինը բաց վարդագույն երանգ էր առել: Մազերը քամուց թափվեցին ուսերին: Կրծքի տակ համաչափ տրոփում էր սիրտը:

Երջանկությունից նրա շունչը կտրվում էր, բայց հանկարծ այնպես որոշակի զգաց իր թևեր չունենալը: Չէր կարող բարձրացնել նույնիսկ ուսերին ընկած մազերը, չէր կարող մատներով շոշափել-զգալ հողի տաքությունն ու փխրունությունը: Չէր կարող շոշափել իրեն իսկ՝ իր կենդանի ու շնչող մարմինը...

Եվ երբ նա լաց եղավ, երկու շողշողուն արցունք սահեցին այտերով վար, կենդանացած արձանը գոհացավ նրանով, որ զգաց արցունքի թացությունն ու շրթունքին՝ նրա աղահամը:

«Կորուստն արժե գըտածին»,— խշշաց ծեր մայրին, և իր տերևներից հյուսած թիկնոցը նետեց նրա վրա: Չէ՞ որ արձանը մերկ էր:

Կանգնել էր կենդանացած աղջիկն ու չգիտեր ո՞ւր գնալ: Հենց այդ ժամանակ էլ նրան տեսավ արքայազնը: Տեսավ ու հմայվեց տերևներից հյուսված թիկնոցով երիտասարդ, ոտաբոբիկ կնոջով, որը թևեր չուներ ու անօգնական էր երեխայի նման:

Արքայազնը նրան իր պալատը տարավ, դարձրեց թագուհի: Իսկ պատվանդանի վրա, ի հիշատակ թևերը զոհաբերած թագուհու, կանգնեցրին նրա արձանը, անպայման տեսած կլինեք՝ գեղեցիկ ու տխուր կին է՝ կտրված թևերով:

## ՄԻՏԻԿԸ

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

Աշնան վերջն էր,
Աշնան վերջն էր,
Լեռան ուսը
Ձյունի մեջ էր:

Դաշտը՝ եղյամ,
Ծառը մերկ էր,
Շուրջը միայն
Քամու երգ էր:

Փոքրիկ մի ծիտ,
Փոքրիկ մի ծիտ,
Դողդողում էր
Ճյուղին վոխտ:

Մլվլում՝ իր
Տաք երգերը,
Որ հեշտ տանի
Ձմռան բեռը:

Մլվլում էր,
Երգում, պարում,
Խնդրում շուտ գան
Արև, գարուն...

## ՍՊԱՍՈՒՄ

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ծանրացել են ամպերն արդեն,
Երկինքն է մթնում.
Փաթիլները քուն են մտել
Ամպե անկողնում:
Քամին կգա ու կուլի,
Կարթնանան նրանք,
Կիջնի սար ու ձորի վրա
Ձյունե զարդարանք...



digitised by A.R.A.R.@




Ասում են, փղերն ունեն գազաններին հատուկ հիշողություն՝ տեղի, կերակրի, իրենց խնամող մարդկանց: Բայց այդպես չէ: Փղերը անհամեմատ ավելի են հիշում իրենց տեսածից: Երբեմն նույնիսկ հիշում են այն, ինչ մարդիկ մոռանում են:

Մի անգամ կրկեսում այսպիսի դեպք պատահեց: Կուլիսները եկավ թաղային միլիցիոները լրիվ համազգեստով և պահակին խնդրեց վարժեցնողի մոտ տանել:

Փորձը նոր էր վերջացել: Գազանները արդեն իրենց տեղերում էին, հանույքով ծամում էին իրենց նախաճաշը: Վարժեցնողը պարապ դահլիճում նստած հանգստանում էր: Բարձր տըրամադրության մեջ էր, որովհետև փորձը հաջող էր անցել: Իսկ Կատրին անունով փիղը, այ քեզ հրա՜շք, իր համարը մի քանի անգամ կատարեց, առանց ստիպելու: Նրան փղատուն են ուզում տանել, իսկ նա էլի մանեժ է վերադառնում՝ ուզում է ամեն ինչ նորից սկսել:

«Խելացի և աշխատասեր կենդանի է»,— մտածում էր վարժեցնողը և հանկարծ իր ետևից լսեց.

— Բարև ձեզ:

Վարժեցնողը շրջվեց և թաղայինին տեսնելով զարմացավ:

— Ես ձեր թաղայինն եմ,— ասաց միլիցիոները:



digitised by A.R.A.R.@

— Լսում եմ:

— Տղաներ պետք է վճարեք: Վը-նասը հաշվել ենք, այնքան էլ փոքր գումար չէ: Բայց դա չէ կարևորը: Մարդիկ դառնացել են՝ կիրակի օրերն աշխատել են, չարչարվել, և հանկարծ հինգ րոպեում ամբողջ գազոնը տրոր-ված է...

— Ե՞ս ինչ մեղք ունեմ,— զարմա-ցավ վարժեցնողը:

— Ինչպե՞ս թե: Փիղը ձերն է, չէ՞,— միլիցիոները հանեց բլոկնոտը, կարդաց.— Կատրին է կոչվում: Ութ տարեկան է: Աշխատում է կրկեսում: Այդպես չէ՞:

— Այդպես է: Բայց...

— Մի՛ տաքացեք, սկսենք հերթով: Այսօր առավոտյան ժամը յոթին դուք Կատրինի հետ կրկեսի մոտի հրա-պարակում...

— Այդպիսի բան չի եղե՛լ,— բողո-քում է վարժեցնողը,— ժամը յոթին ես դեռ քնած էի, իսկ Կատրինը կրկեսի բակից այն կողմ կնճիթն էլ ցույց չի տալիս:

— Մի՛ խաբեք, մենք վկաներ ու-նենք: Սա մեկ: Երկրորդ՝ մեր քաղա-քում ուրիշ փիղ առայժմ չկա:

— Բայց ես իսկապես ոչինչ չգի-տեմ...

— Ահա թե ինչ է պատահել: Մի-լիցիայի մեր բաժանմունքի կողքին, հենց կրկեսի դիմաց ծաղկանոց կար, գազոնապատված: Եվ կողքին՝ ծեր ունենի: Ծաղիկները մենք ենք գնել ու տնկել: Իսկ այսօր առավոտյան ձեր փիղը բոլոր ծաղիկները կերել է, գա-զոնը տրորել, իսկ ծերացած ունին էլ՝ ջարդել...

Վարժեցնողը հոգոց հանեց: Պետք է այս ամենի մեջ խորամուխ լինել, ի՞չ բան կարող էր պատահել առավոտ-յան...

Նախաճաշն ավարտվեց: Կատրինը կանգնած էր բակում, արևի տակ տա-քանում էր, իսկ աչքերը բավականու-թյունից կկոցել էր: Քիչ հեռու մարդ կար նստած, նայում էր փղին և ժպտ-տում: Դուք երբևէ տեսե՞լ եք ծնողնե-րի, որոնք հետևում են իրենց փոք-րիկներին: Սրանք բահիկներով, ա-վենք, բրգիկներ են սարքում ավազից, իսկ հայրերն ու մայրերը հիացմունքից քարացել են: Այդ րոպեին նրանք աշ-խարհի ամենաերջանիկ մարդիկն են: Այս մարդն էլ հիմա շատ նման էր այդ ծնողներին:

Հանկարծ Կատրինը բաց է անում աչքերը, ականջներն է ցցում, կնճիթը վեր բարձրացնում ու քարացած լսում է:

— Ի՞նչ պատահեց, Կատյո՛ւշա: Այստեղ բոլորը մերոնք են,— հանգըս-տացնում է մարդը:

Բայց փիղը զգայուն է, գիտի՝ օտար մարդ է երևացել:

— Ապա մի պատմե՛ք, այսօր ին-չե՞ր եք արել,— նրանց կողմը դարձավ վարժեցնողը: Նրանց, այսինքն մար-դուն և փղին դիմեց, որովհետև նրանք միշտ միաբան են:

Կատրինը, ինչ խոսք, խոսել չգի-տի, բայց ամեն ինչ հասկանում է: Դրա համար էլ ականջները սեղմել է, պոչը՝ կախել: Զգում է, որ մեղավոր է:

— Իսկ ի՞նչ է պատահել,— անմեղ տեսքով հարցնում է մարդը:

— Փղերին կարելի՞ է ծաղկանոց մտցնել,— բարկանում է միլիցիոները:

— Ախր ի՞նչ գիտեի, թե այդպես կստացվեր...— շփոթված խոսեց մար-դը:— Տեսա լավ եղանակ է, մինչև փորձն էլ անհագին ժամանակ կար: Արի, մտածեցի, Կատյուշային բակ տանեմ, թող զբոսնի: Իսկ նա դարպա-սին է ձգտում, ճեղքից դուրս է նայում: Երևի բակը ձանձրացրել էր կենդա-նուն: Ես էլ մտածեցի՝ ուրախացնեմ նրան, դուրս տանեմ մի երկու րոպեով: Դուրս եկանք: Նա իսկույն ընկատեց: Երկար կանգնեց, բոլոր ծաղիկները հո-տոտեց, իսկ հետո՝ հափ, զառ-մանու-շակը պոկե՛ց և բերանը տարավ: Ես



digitised by A.R.A.R.@

նրան ասում եմ՝ չի կարելի, մեզ վրա կբարկանան: Միշտ այնքան լուռ է, իսկ հիմա կարծես շուռ էին տվել: Պարզապես ծաղիկները նրան դուր եկան: Կարող է կյանքում առաջին անգամ էր փորձում. ժողովուրդ հավաքվեց, մեկը գոռում էր, մյուսը՝ բարկանում, մի ուրիշը՝ քրքջում: Բարկացած վրան գոռում եմ՝ ի՞նչ ես խուլիգանություն անում, անմիջապես դադարեցրու: Կընճիթից բռնեցի և սկսեցի քաշել: Իսկ փղերը կոպիտ վերաբերմունք չեն սիրում: Կնճիթն ազատեց, ետ-ետ գնաց, իսկ այնտեղ ուղի կար... Դուք, ընկե՛ր պետ, նկատի ունեցեք, որ նա առանց դիտավորության արեց, հանկարծակի ստացվեց... Հենց այդ րոպեին էլ ձեզնից մեկը երևաց, ով գիտի, համազգեստից վախեցավ...

— Ուրեմն միլիցիոների վախի՞ց փախաք,— ասաց թաղայինը:

— Կատյուշան փախավ, ես էլ՝ նրա ետևից: Հետո ես նրան ասում եմ՝ ինչու այդպես վարվեցինք, հիմա անախորժություններ կլինեն...—մարդը նայում է փղին, կարծես խնդրում է հաստատիր, հաստատիր, ասե՞լ եմ, թե չէ:

— Իսկ ինձնից ինչո՞ւ թաքցրիք, մտածեցիք չե՞մ իմանա:

— Չուզեցինք ժամանակից շուտ տրամադրությունդ փչացնել:

Վարժեցնողը մտահոգվեց: Ի՞նչ անել: Ի՞նչ պատասխանել միլիցիոներին: Իսկ սա Կատրինի կողքին կանգնած ամեն ինչ մոռացել էր: Ե՛վ իր պաշտոնը, և՛ իր զայրույթը: Աչքերը մանկան աչքերի պես սկսեցին փայլել՝ առաջին անգամ էր «կենդանի» փիղ տեսնում: Այ քեզ զանգվա՜-ա՜ծ: Մի հատ կնճիթը շարժի, ոչ մեկը տեղում չի մնա: Իսկ նա հեզիկ կանգնել է, կարծես ասում է՝ պատժեք, մեղավոր եմ...

— Կարելի՞ է քեզ ձեռք տալ:

— Կարելի է,—փղի փոխարեն պատասխանում է վարժեցնողը: Նա չի զարմանում, որ փղին են դիմել:— Միայն թե նրան ոչ թե ձեռք տալ է պետք, այլ մի լավ հասցնել գոտիով փափուկ տեղին...

Միլիցիոները վախվխելով շոյում է փղի կնճիթը:

—Կարծում էի դու փափուկ ես...

Կատրինը սուսիկ-փուսիկ կանգնած է: Զգում է՝ բարի մարդ է: Թաղայինն ավելի համարձակ է շոյում փղին, դուր է գալիս նրա խորդուբորդությունը:

— Բաժանմունք վերադառնամ և պատմեմ, որ կենդանի փիղ եմ շոյել, չեն հավատա,— ծիծաղեց միլիցիոները,—իսկ տուգանքը պետք է վճարել...

Ա՜յ թե ծիծաղեցին բաժանմունքում թաղայինի պատմածը լսելով, և Կատրինը օրենքը խախտողից փոխակերպվեց... հերոսի: Նույնիսկ որոշեցին ամբողջ բաժանմունքով կրկես գնալ:

Եվ գնացին:

Կրկեսի հրապարակ դուրս եկավ Կատրինը: Ընկերները թփթփացնում էին թաղայինի ուսին:

— Նայի՛ր, փիղը քեզ ճանաչեց: Անընդհատ աշխատում է մեր կողմը շուռ գալ:

Փիղն այնպիսի համարներ կատարեց, այնպես աշխատեց, ինչպես ոչ մի փիղ չէր արել: Միլիցիոներները գոհ են, ամբողջ ուժով ծափահարում են: Եվ ինչպես ընդունված է կրկեսում, մանեժ են բերում ծաղիկներով լի զամբյուղը: Փիղն այն բարձրացնում է կնճիթով: Դահլիճը շունչը պահած ըսպասում է՝ ի՞նչ է անելու փիղը: Իսկ նա մոտենում է պատնեշին, ականջներն է թափահարում և... զամբյուղը մեկնում է թաղայինին:

Երևի Կատյուշան թաղայինից ներում էր հայցում իր արարքի համար: Ուրեմն, այնուամենայնիվ, հիշեց իր անսպասելի հյուրին: Եվ դեռ ասում են՝ փղերը հիշողություն չունեն: Հիմարություն են դուրս տալիս, միանգամայն դատարկ բան:

digitised by A.R.A.R.@





# Կատուն և փիղը

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐ

Անապատում լիներ փիղը
Թե անտառում,
Ամենուրեք կատվի հետ էր
Նա թափառում...
Իր կնճիթից կապած նրան
Ման էր տալիս,
Բաց չէր թողնում խեղճին նույնիսկ
Լվացվելիս...
Ուղտը տեսավ՝ հարցում արեց
Փիղ հսկային,
Թե՝ ձեր միջև ի՞նչ ընդհանուր
Բաներ կային,
Որ անտառի հաղթ ու հզոր
Գազաններին թողած բոլոր,
Ընկերացել ես դու կատվին:
Ընկերություն չես անում դու
Եթե ինձ հետ,
Ընկերություն արա գոնե
Որմզդեղնի կամ ցուլի հետ...
Տե՛ս, վագրաձին ձիերին է
Ընկերացել,
Իսկ այծյամը՝ եղնիկներին...
Խլուրդները խոզերին են
Ընկերացել,
Իսկ էշերը՝ գոմեշներին...
Ես էլ, գիտես, հարմար ընկեր
Չգտնելով՝
Ընկերացա ընձուղտի հետ...



Իսկ դու քո այդ ընկեր կատվին
Եվ քո հսկա տեսքին նայիր.
Չե՞ս նկատում, թե որքան եք
Դուք անհարիր...
Փիղը ասաց՝ իմ ուղտ եղբայր,
Ես էլ քեզ պես
Կարծում էի, թե ամենից
Հզորն եմ ես,
Բայց վերջերս ականջս այնպես
Կսկծաց ու խտուտ եկավ,
Զարկում էի իմ գլուխը
Ծառերին հաղթ...
Եվ ահավոր այդ տանջանքին
Չէր լինում վերջ:
Ցավագալար մռնչալով,
Երբ գլուխս մի անգամ էլ
Խփեցի այս հսկա ծառին՝
Մուկն ականջիցս ընկավ գետնին:
Հենց այդ պահին,
Ինչպես փրկիչ, ժամանակին,
Հայտնվեց այս խիզախ կատուն
Ու չոքեց այդ մկան բկին...
Մամոնտների ուժի մասին
Հո լա՞վ գիտես,
Բայց գիտե՞ս, որ նրանց ցեղն էլ
Մուկն սպանեց:
Քանի ապրի այս կատուն իմ
Գրկում տաքուկ,
Չի մոտենա ինձ ոչ մի մուկ:


Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ՊԱՏԵՐԱԶՄ «ԿԱՂԱՄԲԻ ԱՐՔԱՆԵՐԻ» ԴԵՄ

Փտավոր են ապրում ամերիկյան պլանտատորները Կալիֆոռնիայի հարավային նահանգի արևի տակ: Նույնիսկ ձմռանը նրանք ամերիկացիներին մատակարարում են թարմ բանջարեղեն: Իսկ մթերքների գները անընդհատ աճում են: Սալաթն, օրինակ, անցյալ տարի կրկնակի թանկ էր: Պլանտատորները եկամուտը հաշվելիս ուրախությունից ձեռքերը շփում էին:

Գյուղատնտեսական աշխատողների միացյալ արհմիությունը տերերից պահանջեց բարձրացնել այդ բանջարեղենն աճեցնողների աշխատավարձը: «Օքեյ»—պատասխանեցին «սալաթի և կաղամբի արքաները» և մի քանի գրոշ ավելացրին բատրակների աղքատիկ աշխատավարձին:

Պլանտատորների այս ծաղր ու ծանակին ի պատասխան արհմիությունը գործադուլ հայտարարեց: Տասնմեկ պլանտացիայում աշխատանքը դադարեց:

Տերերն անմիջապես հարևան նահանգներից՝ Տեխասից և Նյու-Մեքսիկոյից շտրայկբրեխերներ* վարձեցին:

Բանվորները փորձեցին շտրայկբրեխերներին մոտ չթողնել, որպեսզի կարողանան շարունակել գործադուլը: Բայց մեծաքսակներին օգնության եկավ տեղական իշխանությունը՝ շերիֆը, նրա օգնականները և հսկիչները: Տասնյակ բանվորներ վիրավորվեցին, դաժանորեն ծեծվեցին, կծոտվեցին պահապան շներից:

Ռուֆինո և Ֆորտունատո Կոնտրերաս եղբայրները դաշտ եկան, որպեսզի շտրայկբրեխերներին թույլ չտան այն մարդկանց հետ միավորվել, որոնց հետ նրանք բաժանեն, համոզեն միանալու գործադուլին: Վերակացուները նրանց վրա կրակ բացեցին, շատ լավ ճանաչելով եղբայրներին՝ Կոնտրերասների ընտանիքը որը քսան տարի մեջք էր ծռել այդ պլանտացիաներում, սակայն այդ վերակացուներին ետ չկանգնեցրին մարդասպանությունից:

Ռուֆինոն ծանր վիրավոր էր, արնաքամ էր լինում: Գործադուլավորները աշխատում էին փրկել նրան, բայց վերակացուները կրակում էին, ոչ ոքի մոտիկ չէին թողնում: Ոստիկանությունը տեղ հասավ մի քանի ժամ հետո միայն: Երեք վերակացուները ձերբակալվեցին սպանության մեղադրանքով, բայց շուտով երաշխավորությամբ ազատ արձակվեցին:

Իսկ Ռուֆինո Կոնտրերասը մահացավ հիվանդանոց տանելու ճանապարհին:

Դասակարգային արյունահեղ կռվի այսպիսի վախճան ունեցավ իրենց շահերը պաշտպանող գյուղատնտեսական աշխատողների գործադուլը:

Արհմիությունները պայքարը փոխադրեցին մոտակա քաղաքների խանութները, որտեղ վաճառվում էր այդ բանջարեղենը, այդ ապրանքներին բոյկոտ կազմակերպեցին: Տերերը ստիպված եղան համաձայնել բանվորների առաջարկած բոլոր պայմաններին: Գործադուլն ավարտվեց բատրակների հաղթանակով, նրանց զոհողությունները իզուր չանցան:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

---

* Այսպես են կոչում գործադուլավորի փոխարեն կապիտալիստի կողմից վարձված մարդուն:



digitised by A.R.A.R.@

# ԹՈՄԱՍ ԷԴԻՍՈՆ




Անսահման ու անհագ հետաքրքրասիրությունը Թոմասին ստիպում էր լինելու ամենուր, ճաշակելու զանազան փորձություններ:

Նա անընդհատ ելումուտ էր անում իր հոր պահեստը, ուսումնասիրում անտառանյութերի մշակման տեխնոլոգիան, հարցերի տարափ ուղղում աշխատակիցներին: Որևէ բանի մասին ավելի լավ պատկերացում ունենալու համար այնպիսի վտանգավոր տեղեր էր մագլցում, որ մեկ ընկնում էր ջրանցքը, ուրիշ անգամ՝ փրկվում հացահատիկի կույտի մեջ շնչահեղձ լինելուց, մի այլ անգամ՝ արյունլվիկ էր լինում կացին սրելիս և այլն:

Մի անգամ ահռելի բոց է բարձրանում նրանց տան ետևում և մարդիկ շտապելով այնտեղ, տեսնում են, որ այրվում է մեծ մարագը: Պարզվում է, որ փոքրիկ Թոմասն է հրդեհի պատճառը և հրաշքով է փրկվել այրվելուց: Վերջին արարքը լցնում է Թոմասի հոր համբերության բաժակը և, համաձայն այդ օրերի դաժան սովորության, նրան հրապարակով մտրակահարում են ինչպես որ հարկն է:



Նա առաջներում էլ էր ճաշակել գանակոծություն պապիկի հին մահակից, սակայն այլ էր հրապարակային պատիժը:

Ութը տարեկան էր, երբ նրանց ընտանիքը տեղափոխվեց Հյուրն Փորթ (Նավահանգիստ, որը սահմանակից է Կանադային և Միացյալ Նահանգներին): Այստեղ Թոմասը առաջին անգամ սկսում է դպրոց հաճախել: Ուսուցիչների մոտ շուտով նա հիմար և բթամիտ աշակերտի համբավ է ձեռք բերում:

Առարկաներից ամենից ավելի քիմիան էր սիրում: Դատարկում է իրենց նկուղի մի մասը և դարակներում դասավորում սրվակներ զանազան քիմիական նյութերով և ըստ Փարքրի «Դպրոցական փիլիսոփայության» սկսում փորձեր անել: Սակայն շուտով սարքավորումների ու նյութերի զգալի պակաս է ունենում: Դրա համար որոշում է դրամ վաստակել այդ կարիքները հոգալու համար:

Էդիսոնները ապրում էին մի հարմարավետ առանձնատան մեջ, ունեին զանազան ընտանի կենդանիներ և մի մեծ պտղատու այգի, որի բերքի ավելցուկը Թոմասը մոր թույլտվությամբ վաճառքի է հանում: Հոլանդացի Մայքլ Օթսի՝ իր հոր աշակերտի հետ, ամեն շաբաթ լցնում Ի ձեռնասայլակը և տանում վաճառելու քաղաքի փողոցներում: Նրա մթերքները թարմ էին ու ընտիր, գները՝ համեստ, այդ պատճառով էլ հաճա-



digitised by A.R.A.R.@



խորդների թիվը գնալով ավելանում էր: Հավաքած դրամով Թոմասը փորձերի համար անհրաժեշտ պարագաներ է ձեռք բերում:

Ծուտով նրա լաբորատորիան խիստ գործնական տեսք է ընդունում: Սրվակների թիվն անցնում է 200-ից: Ապահովության համար նա բոլորի վրա խորամանկորեն փակցնում է «թույն է» պիտակը, որպեսզի սարսափեցներ հետաքրքրասեր ՙներխուժողներին:

Որոշ ժամանակ անց բանջարեղենի վաճառքից ստացված գումարը չի բավարարում սարքավորումներ և նյութեր գնելուն: Հավելյալ դրամ վաստակելու նպատակով դիմում է երկաթուղային ընկերությանը, ստանձնում ուղեկցողի օգնականի պաշտոն: Աշխատանքային ժամերը առավոտյան յոթից մինչև երեկոյան ինն անց 30 րոպե էր: Նա մանկությունից թույլ երեխա էր, սակայն իր մեջ միշտ սերմանում էր այն գաղափարը, որ ինքը ֆիզիկապես ամուր տղա է, կարող է կրել ամեն կարգի դժվարություններ:

Կարճ ժամանակ անց նա բավականին հաջողություն է ունենում ուղեկցողի պաշտոնում: Պարտականությունները կատարելիս ճարպիկ էր, արագաշարժ, ուղևորների հարցերին տալիս էր խելացի պատասխաններ:

Երկաթուղային ծառայության երկար ժամերի հետևանքով, նա շատ էր կտրվում իր լաբորատորիայից, ուստի և որոշում է գնացքում անցկացրած պարապ ժամերը տրամադրել փորձերին: Գնացքի շարասյանը կից վագոնիկ կար, որ նախատեսվում էր ուղեբեռների և Միացյալ Նահանգների փոստային ծառայությունների համար, բայց երկար ժամանակ չէր օգտագործվում, և Թոմասը որոշում է իր լաբորատորիան տեղափոխել այնտեղ: Աստիճանաբար իր գանձերը նկուղից փոխադրում է գնացք և առօրյա պարտականությունները կատարելուց հետո զբաղվում փորձերով:

Նա կանոնավոր կերպով զբաղվում էր քիմիայով և սկսել էր ֆիզիկայի ուսումնասիրությունը: Այժմ երկաթուղային վագոնում նա ուներ այնպիսի սարքավորումներ, որոնք բավականին բարդ և արժեքավոր էին: Իր վաստակած գումարը համարյա ամբողջությամբ օգտագործում էր այդ նպատակների համար: Մի անգամ առավոտյան, շոգեքարշի կտրուկ արգելակումից մի կտոր ֆոսֆոր է ընկնում հատակին և անմիջապես բռնկվում: Թոմասը և վագոնի ուղեկցողը նետվում են և հանգցնում հրդեհը: Հաջորդ կանգառում կատաղած ուղեկցողը մեկը մյուսի ետևից կառամատույցի վրա է շպրտում Թոմասի սարքերը, վերջում էլ՝ մի ծանր ապտակ հասցնում տղայի դեմքին:





digitised by A.R.A.R.@

Հարվածից շփոթված Թոմասը կանգնել էր կառամատույցի վրա, ավերված սարքավորումների կողքին: Թվում էր, թե ամեն ինչ վերջացած էր: Սակայն Թոմասը չի ընկճվում: Մեկ առ մեկ տուն է տանում սարքավորումների անվնաս մասերը և խոստանալով մայրիկին լինել չափազանց զգույշ՝ աստիճանաբար վերականգնում է բոլորը:

Շուտով սկսում է տարվել էլեկտրականությամբ: Իր ընկերներից մեկի՝ Ջոն Վորդի հետ, մի հաղորդալար է անցկացնում իրենց տների միջև: Մի սովորական մետաղալար՝ շշե մեկուսիչներով: Էլեկտրական հոսանք ստանալու համար անհրաժեշտ էր մի մարտկոց: Որոշ ժամանակ անց, մարտկոց գնելուց հետո, կարողանում են միմյանց տեղեկություններ հաղորդել: Բայց մի քանի օր անց այգի ներխուժած կովը ավերում է հաղորդալարը:

Թոմասը քաջ գիտակցում է, որ իրեն անհրաժեշտ են լուրջ գիտելիքներ էլեկտրականության վերաբերյալ: Իսկ այն, ինչ ինքն էր անում, պարզ բաներ էին, հայտնի շատերին: Եվ առիթը ներկայանում է ինքնաբերաբար: 1862 թ. մի օգոստոսյան առավոտ նա փրկում է երկաթուղագծերի մեջ ավազի և խճի հետ խաղացող կայարանապետի երեխային գնացքի տակ ընկնելուց: Միակ բանը, որ երեխայի երախտապարտ հայրը կարող էր որպես հատուցում առաջարկել՝ դա նրան որոշ գիտելիքներ հաղորդելն էր էլեկտրականությունից: Ոչինչ այդպես հաճելի չէր Թոմասին, որքան այդ առաջարկը: Անմիջապես երկուսով գործի են անցնում, և տասը օրվա ընթացքում Թոմասը կառուցում է մի փոքրիկ հեռագրական սարքավորումների համալիր, որն աշխատում է կանոնավոր և ճշգրիտ:

Շրջապատի մարդիկ սկսում են Թոմասի և նրա ձեռնարկած գործերի մասին հիացմունքով խոսել: Նա ամբողջությամբ կլանվում է էլեկտրականությամբ, իր սիրած գործին է նվիրում յուրաքանչյուր ազատ վայրկյանը: Թողնում է երկաթուղային ծառայությունը և ստանձնում հեռագրող օպերատորի պարտականությունը: 16-ամյա տղան վերջապես գտնում էր իր կյանքի նպատակը:



Թե ինչպես է կատարել զանազան հայտնագործություններ, աշխատել անխոնջ եռանդով, համբերությամբ կրել զրկանքներ և հաղթահարել հուսահատ պահեր՝ հայտնի են ամբողջ աշխարհին: Թոմաս Էդիսոնի անվան հետ են կապված ֆոնոգրաֆի, կինեմատոգրաֆի, ինչպես նաև մի շարք այլ զարմանահրաշ հայտնագործություններ:

*Թարգմ. Վ. ԲՈՒԼՈՒԹՅԱՆԻ*



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@




Լույսի ճառագայթը արևից մինչև երկիր 150 միլիոն կիլոմետր տարածությունը կտրում է մոտ 8,3 րոպեում: Մեր գալակտիկայի մի ծայրից մյուսը՝ նա կանցնի 85 հազար տարվա ընթացքում:

Առաջներում գիշերն ու ցերեկը առանձին-առանձին բաժանված են եղել 12-ական ժամերի, բայց դա դժվարություն էր ըստեղծում, քանի որ տարվա տարբեր օրերին գիշերային ու ցերեկային ժամերն իրար հավասար տևողություն չունեն և անհնար էր պատրաստել տարբեր արագություններով աշխատող ժամացույցներ: Մեր թվարկության երկրորդ դարից գիշերվա ու ցերեկվա 12-ական ժամերը միացվեցին և օրը բաժանվեց 24 հավասար ժամերի:

ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ



# «ԱՐՔԱՅԱԶՆԸ ԵՎ ԱՂՔԱՏԸ»

Հայերեն հրատարակությամբ լույս է տեսել ամերիկյան նշանավոր գրող Մարկ Տվենի «Արքայազնը և աղքատը» վիպակը: Այն ամերիկյան կյանքին չի վերաբերում: Տվենն այս անգամ գնացել է Անգլիայի խոր միջնադարը, պատմում է, թե ինչպես արտաքինով իրար նման պատանիները՝ արքայազն Էդուարդը և աղքատ Թոմ Քենթին փոխում են իրենց տեղերն ու վիճակները, այնուհետև թե ինչ արկածների են ենթարկվում՝ կիմանաք կարդալով գիրքը:

Գրքի նկարազարդումների հեղինակը նկարիչ Վաղինակ Մանդակունին է: Ուշագրավ են հատկապես փորձանքի մեջ ընկած արքայազնի ազատարար Մայլս Գենդոնի թեմաներով էջերը: Երևում է, որ նկարիչը նույնպես, մեզնից շատերի պես, թերևս մանկուց, հատուկ ջերմությամբ է համակվել այդ ազնիվ ու բարի երիտասարդին նվիրված գլուխները կարդալիս և ստեղծել է պարզ ու շիտակ, համարձակ ու ասպետական էություն ունեցող մի ամբողջական կերպար:

Մարկ Տվենը մի առիթով ասել է. «Ինձ համար չկա ավելի թանկ գովասանք, քան իմ երեխաների գովասան-


digitised by A.R.A.R.@

քը»: Եվ ահա մեկ հարյուրամյակից էլ ավելի է, որ աշխարհի բոլոր երեխաները անքուն գիշերներ են անցկացնում՝ նրա գրքերից հակված, ապրում են նրա գրական անմահ զավակների՝ Թոմ Սոյերի ու Հեկլբերի Ֆիննի, նաև Թոմ Քենթիի ու արքայազն Էդուարդի և էլի ուրիշ մեկընդմիշտ սիրելի դարձած հերոսների կյանքով, կյանք, որը չնայած սաստիկ դառնություններից, անչափ գրավիչ է ամեն մի պատանու սրտին ու համակում է պայքարելու, արդարն ու վեհը պաշտպանելու ազնվագույն ձգտումով, քանզի դրան ծնունդ տվող հեղինակն ինքը խիզախ մարդ էր, բուռն կերպով սիրում էր կյանքը և կարողանում էր հավասար ուժով թե՛ հուզել իր ընթերցողին, թե՛ ծիծաղեցնել:

Նրանք, ովքեր կցանկանան ավելի հանգամանորեն ծանոթանալ մեծ գրողի կյանքին ու գործունեությանը, կարող են կարդալ նաև Մորիս Մենդելսոնի «Մարկ Տվեն» գիրքը, որը հրատարակվել է «Նշանավոր մարդկանց կյանքը» մատենաշարով («Հայաստան», 1970):

*ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ*




**ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ**




Բրազիլիայի samines ընտանիքին պատկանող մրջյունները աղետային հեղեղումներից շաբաթներ առաջ զգում են գալիք աղետը և գաղթում իրենց տեղերից: Տեղի հնդկացիները օգտագործում են այդ հանգամանքը և մրջյունների գաղթի հետ լքում են իրենց բնակավայրերն ու ազատվում աղետից:

Արյունը, ինչպես հայտնի է, մաքրվում է երիկամներում: Այս 300 գրամ քաշ ունեցող օրգանում բնությունը տեղավորել է 18 կիլոմետր երկարությամբ արյունատար անոթների մի վիթխարի ցանց ու մոտ երկու և կես միլիոն կենսաբանական զտիչներ: Երիկամները մեկ րոպեում բաց են թողնում մոտ մեկուկես լիտր արյուն, օրական՝ 2160 լիտր:



digitised by A.R.A.R.@




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-
ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-88, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 12 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 09099։ Պատվեր 1862։ Տպաքանակ 51044։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ 70×100¹/₁₆։ Հանձնված է արտադրության 3/XI 1980 թ.։ Ստորագրված է տպագրության 23/XII 1980 թ.։

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

© «Պիոներ» 1980

ՀՍՍՀ-Арм.ССР



digitised by A.R.A.R.@







*Գտեք նման տոնածառերը*




*Ո՞ր լարով կարելի է միացնել հեռուստացույցը (ռադիոն, փոշեկուլը)*

## «ՊԻՈՆԵՐ» № 11-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ԳԱՂՏՆԱԳՐԻ ԼՐԱՑՈՒՄ

Գաղտնագիրը լուծելու համար յուրաքանչյուր հարցի դիմաց պետք է նշվեին այն թվերը, որոնք փոխարինվելու են գտած բառի համապատասխան տառերով։ Այդ թվերը մեր կողմից թյուրիմացաբար բաց են թողնված։ Դրանք են. 1.— 6, 7, 24, 7, 21, 15, 7, 4։ 2.— 1, 7, 10, 7, 4, 24, 7, 4։ 3.— 3, 23, 1, 14, 7, 4։ 4.—10, 1, 16, 7, 20, 7, 8, 15։ 5.— 4, 7, 8, 1, 13, 7, 9, 3։ 6.— 16, 25, 13, 7, 21, 24, 7, 4։ 7.— 21, 1, 14, 7, 13։ 8.— 17, 7, 6, 3, 4, 24, 7, 4։ 9.— 14, 7, 8, 19, 26։ 10.— 14, 7, 4, 5, 11, 8։ 11.— 3, 21, 7, 6, 7, 13, 24, 7, 4։ 12.— 22, 11, 18, 25, 1, 12, 18, 1, 4, 15։



digitised by A.R.A.R.@

